Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16 (23)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ (բ) Կ ԿԵՆՏկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



## № 16 (23)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*«Դեմոկրատիա չնչին փոքրամասնության համար, դեմոկրատիա հարուստների համար, ահա թե ինչպիսին է կապիտալիստական հասարակության դեմոկրատիզմը: Եթե ավելի մոտիկից դիտենք կապիտալիստական դեմոկրատիայի մեխանիզմը, ապա ամենուրեք ու ամեն տեղ,— թե՛ ընտրական իրավունքի «մանր», իբր թե մանր, մանրամասնությունների մեջ (նստակեցության ցենզ, կանանց զրկումն ընտրական իրավունքից և այլն), թե՛ ներկայացուցչական հիմնարկների տեխնիկայում, թե՛ ժողովների իրավունքի դեմ հարուցված փաստական խոչընդոտներում (հասարակական շենքերն «աղքատների» համար չեն), թե՛ ամենօրյա մամուլի զուտ կապիտալիստական կազմակերպության մեջ և այլն, և*

այն, մենք կտեսնենք դեմոկրատիզմի անվերջ ու անվերջ սահմանափակումներ։ Այդ սահմանափակումները, բացառումները, բացառությունները, խոչընդոտները, որ հարուցում են չքավորների դեմ, մանր են թվում հատկապես այն մարդու աչքին, որն ինքը երբեք կարիք չի տեսել և ճնշված դասակարգերի հետ նրանց մասսայական կյանքում մոտիկ չի եղել (իսկ բուրժուական հրապարակախոսների և քաղաքագետների ինը տասներորդը, եթե ոչ իննսունինը հարյուրերորդը, այդպիսին են).— սակայն այդ սահմանափակումներն՝ իբրև ընդհանուր գումար վերցրած, վտարում, դուրս են մղում չքավորությանը քաղաքականությունից, դեմոկրատիային ակտիվ մասնակցություն ունենալուց» (ԼԵՆԻՆ)։

Քսանվեց եվրոպական բուրժուական երկրներից 16-ը,— այսինքն բուրժուական Եվրոպայի երկու երրորդ մասը,— ունեն ֆաշիստական կամ կիսաֆաշիստական դիկտատուրայի ռեժիմ։ Այսպես կոչված դեմոկրատիզմը և բուրժուական ազատությունները պահպանված են Եվրոպայի



հազիվ թե 10-ից ավելի երկրներում։ Բայց նաև այդ՝ այսպես կոչված, դեմոկրատական երկրներում աշխատավորության լայն մասսաների ընտրական իրավունքներն ամեն կերպ սեղմվում են ու կրճատվում՝ հանուն բուրժուազիայի տիրապետության։

## ՏԱՐԻՔԻ ՑԵՆԶ

Բոլոր կապիտալիստական երկրներում երիտասարդությունը զրկված է ընտրական իրավունքից։ Անգլիայում, Ֆրանսիայում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Բելգիայում ընտրելու իրավունքը (ակտիվ ընտրական իրավունք) տրվում է միայն 21 տարեկան դարձած մարդկանց, իսկ ընտրվելու իրավունքը (պասիվ ընտրական իրավունք)՝ 25 տարեկան դարձածներին (բացի Անգլիայից, որտեղ այս իրավունքից օգտվում են 21 տարեկան հասակից սկսած)։ ԱՄՆ-ում սենատում ընտրվելու իրավունք ստանում են 30 տարեկան դարձածները, իսկ Ֆրանսիայում՝ 40 տարեկան դարձածները։

Էլ ավելի բարձր է տարիքի ցենզը Ճապոնիայում, Լեհաստանում, Ռումինիայում,

Դանիայում, Հոլանդիայում և այլն: Այս երկրներում մարդիկ ընտրելու իրավունքից օգտվում են միայն 24–25 տարեկան հասակից սկսած, իսկ ընտրվելու իրավունքից– օրինակ՝ Ճապոնիայում, Լեհաստանում— 30 տարեկան հասակից սկսած:

Այս սահմանափակման իմաստը միանգամայն պարզ է:

Բուրժուազիան այսպիսով ընտրություններին մասնակցելուց հեռու է պահում հեղափոխականորեն տրամադրված, կապիտալիստական ռեժիմից դժգոհ միլիոնավոր աշխատավոր երիտասարդների:

ԽՍՀՄ-ում պետության կառավարմանն ակտիվորեն մասնակցելու մեջ է ներգրավվում ամբողջ խորհրդային երիտասարդությունը: Խորհրդային Միության մեջ հենց միայն գյուղխորհուրդների մինչև 25 տարեկան անդամների թիվը կազմում է 350 հազար, իսկ քաղխորհուրդների նույն տարիքի անդամների թիվը՝ 36 հազար:

Ստալինյան Սահմանադրությունը երիտասարդության կազմակերպություններին իրավունք է տալիս ընտրությունների ժամանակ ինքնուրույնաբար առաջադրելու իրենց թեկնածուները:



## ԿԱՆԱՅՔ ԶՐԿՎԱԾ ԵՆ ԸՆՏՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻՑ

Կապիտալիստական երկրների մեծ մասում կանայք զրկված են ընտրական իրավունքներից: Այդ թվին են պատկանում Ֆրանսիան, Բելգիան, Շվեյցարիան, Հունաստանը, Ճապոնիան, Հարավ-Սլավիան, Չինաստանը, Բուլղարիան, Արգենտինան, Մեքսիկան, Գերմանիան, Իտալիան և այլն:

Իսկ այն մի քանի երկրներում, որտեղ կանանց համենայն դեպս ընտրական իրավունք է տրված, այդ իրավունքը հաճախ ենթարկվում է մի ամբողջ շարք սահմանափակումների: Այսպես օրինակ՝ Հունգարիայում ընտրական իրավունք է տրվում միայն այն կանանց, որոնք դարձել են արդեն 30 տարեկան, համարվում են հունգարական քաղաքացի 10 տարվա ընթացքում, 2 տարի ապրում են միևնույն համայնքում և ավարտել են ժողովրդական դպրոցի 6-րդ դասարանը: Ընտրական իրավունք ստանում են նաև այն կանայք, որոնք «ծնել են երեք օրինական երեխա», ապրում են սեփական ժառանգական գույքի եկամուտով, ունեն ինքնուրույն

տնտեսության և կամ թե ավարտել են բարձրագույն դպրոց։

Ֆաշիզմի յերկրներում, վորտեղ իշխում է խոշոր կապիտալի վարձկանների զինված բանդայի կամայականությունը, առանձին ցինիզմով ու բացահայտորեն վոչնչացվում է կնոջ ամեն մի իրավունքը։ Հիտլերը ֆաշիստների Նյուրենբերգի համագումարում հայտարարեց, թե կնոջ ներկայությունը ռայխստագում խայտառակություն կլիներ ռայխստագի համար։ Հեբբելսը, կրկնելով իր «ֆյուրերին», պարծենկոտությամբ հայտարարում է. «Մենք նացիոնալ-սոցիալիստներս, կնոջ դուրս քշեցինք հասարակական կյանքից։ Բնությունը սահմանել է, վոր կինն ապրի չորս պատերի մեջ»։

Այն յերկրներում, վորտեղ որենքը կնոջն ընտրական իրավունք է տալիս, պարլամենտում համարյա բոլորովին կանայք չեն։ Որինակ՝ Անգլիայում 1935 թվականին համայնքների պալատի ընտրության ժամանակ ընտրվեցին ընդամենը 9 կին, վորը կազմում է պալատի անդամների ընդհանուր թվի (615 հոգի) 1,2 տոկոսը, մինչդեռ Անգլիայում կին-ընտրողների ընդհանուր թիվը կազմում է 16 միլիոն,



այսինքն՝ մոտավորապես բոլոր ընտրողների 53 տոկոսը։

ԽՍՀՄ-ում, վորտեղ կինն ընտրական իրավունքից ոգտվում է տղամարդուն հավասար կերպով, վորտեղ կնոջ համար բոլոր պայմանները ստեղծված են ակտիվ քաղաքական մասնակցություն ունենալու յերկրի կյանքին, 1934-35 թ. թ. գյուղխորհուրդների անդամների 26 տոկոսը և քաղխորհուրդների անդամների 30 տոկոսը կազմում եյին կանայք, իսկ 101 կին ԽՍՀՄ Կենտգործկոմի անդամ եյին։

## ՆՍՏԱԿԵՑՈՒԹՅԱՆ ՑԵՆԶ

Շատ բուրժուական յերկրներում գոյություն ունի նստակեցության ցենզ, այսինքն ընտրական իրավունք տրվում է միայն այն մարդկանց, վորոնք միևնույն տեղում ապրում են սահմանված ժամկետից վոչ պակաս ժամանակ։ Նստակեցության ցենզն ուղղված է բանվորների դեմ, վորոնք կապիտալիզմի և վերջինիս հատուկ գործազրկության պայմաններում ստիպված են իրենց բնակավայրերը փոխել վաստակ ու աշխատանք վորոնելու հա-

մար: Նստակեցության ցենզն առանձնապես հարվածում է սեզոնային և գյուղատնտեսական բանվորներին:

ԱՄՆ-ի 37 նահանգներում ընտրական իրավունք ստանալու համար պետք է նույն տեղն ապրել մի տարի: Հունգարիայում նստակեցության ցենզը հավասար է երկու տարվա: Ֆրանսիայում, Բելգիայում և մի շարք այլ երկրներում այդ ցենզը կազմում է 6 ամիս և ավելին: Նստակեցության ցենզի պատճառով, օրինակ՝ ԱՄՆ-ի Կալիֆորնիայի նահանգում ընտրական իրավունքից զրկվում են մոտ 250 հազար գյուղատնտեսական բանվորներ, վորոնք հանդիսանում են բանվոր դասակարգի առավել ակտիվ մարտական ջոկատներից մեկը: Նրանք ստիպված են տեղից-տեղ փոխադրվել և մի ընտրական շրջանի տերիտորիայում ապրում են վոչ ավելի քան 3 ամիս:

Բուրժուական երկրներում քիչ չեն այնպիսի ընտրողներ, վորոնք փաստորեն զրկված են ընտրություններին մասնակցելու հնարավորությունից: Այդ քաղաքացիները մտցված են ցուցակներում, ցանկանում են քվեարկել, բայց չեն կարող, որովհետև ընտրությունների ժամանակ չեն գտնվում իրենց մշտական բնակավայրում:



Ֆրանսիայում այս կատեգորիայի քաղաքացիները կազմում են բոլոր ընտրողների մոտ 11 տոկոսը, այսինքն՝ նրանց թիվը հասնում է առնվազն մեկ միլիոնի: Այս քաղաքացիների մեջ հատկապես մեծ թիվ են կազմում առևտրական նավատորմի ծովայինները և ձկնորսները, գյուղատնտեսական ու սեզոնային բանվորները և այլն:

Սրա համեմատությամբ ինչպիսի հակապատկեր է ներկայացնում «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» համապատասխան հոդվածը, վորը հոգատարությամբ հնարավորություն է նախատեսում, վորպեսզի ընտրություններին կարողանան մասնակցել նավագնացության մեջ գտնվող ծովայինները, հիվանդանոցներում, սանատորիաներում, ծննդատներում գտնվող հիվանդները, Հյուսիսի և Արևելքի հեռավոր շրջանների մանր բնակավայրերի բնակիչները և այլն:

# ԳՈՒՅՔԱՅԻՆ ՑԵՆԶ

Բուրժուական երկրներում ընտրական սիստեմի դասակարգային բնույթի ցայտուն արտահայտությունը հանդիսանում է գույքային ցենզը: Այդ ցենզը գոյություն ունի ԱՄՆ-ում, Անգլիայում, Շվեդիայում և այլ կապիտալիստական երկրներում:

ԱՄՆ-ի 8 նահանգներում (Ալաբամա, Արկանզաս, Ֆլորիդա, Մասաչուսեթս, Միսիսիպի, Տեննեսի, Տեխաս, Վիրջինիա) ընտրողները պարտավոր են հատուկ հարկ վճարել, վորպեսզի մասնակցեն քվեարկությանը: Այն անձնավորությունները, վորոնք հնարավորություն չունեն այդ հարկը վճարելու, զրկվում են ընտրական իրավունքից: ԱՄՆ-ի 13 նահանգներում (Դելավեր, Լուիզիանա, Մեն, Մասաչուսեթս, Միսսուրի, Նյու-Հեմպշիր, Նյու-Ջերսի, Ոկլահոմա, Ռոդ-Այլենդ, Հարավային Կարոլինա, Տեխաս, Վիրջինիա, Արևմտյան Վիրջինիա) ընտրական իրավունքը կորցնում են այն անձնավորությունները, վորոնք պետությունից նպաստ են ստանում: Ալաբամա նահանգում գործազուրկները զրկված են ձայնի իրավունքից: Երեք նա-



հանգներում (Ալաբամա, Որեգոն, Հարավային Կարոլինա) ընտրական իրավունք ստանալու համար պահանջվում է վորոշ գույքային ցենզ: Շվեդիայում ընտրական իրավունքից զրկվում են այն բոլոր մարդիկ, վորոնք գտնվում են խնամակալության տակ կամ հայտարարված են սնանկ պարտապաններ, կամ թե երկար ժամանակ գտնվում են աղքատախնամ կազմակերպությունների հոգացողության տակ և այլն:

Նույն այդ Շվեդիայում առաջին պալատի (վերին պալատ), ինչպես և մունիցիպալիտետի ընտրություններին մասնակցելուց զրկվում են մասնավորապես այն անձնավորությունները, վորոնք նախորդ երեք ընտրությունների տարիներից մեկում հարկը չեն վճարել: Առաջին պալատում կարող են ընտրվել այն մարդիկ, վորոնք մինչև ընտրություններն առնվազն երեք տարի ունեցել են 50 հազար կրոն գնահատվող գույք, կամ թե իրենց գույքից ու եկամուտից վճարել են առնվազն 3 հազար կրոն հարկ:

# ԱԶԳԱՅԻՆ-ՑԵՂԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄՆԵՐ

Չնայած այն բանին, որ ԱՄՆ-ի սահմանադրությունը հանդիսավոր կերպով ազդարարում է, թե «Միացյալ Նահանգների քաղաքացիների՝ ընտրություններին մասնակցելու իրավունքը չպետք է ժխտվի կամ սահմանափակվի Միացյալ Նահանգների կամ առանձին նահանգների կողմից ցեղի, մորթի գույնի կամ նախկին ստրկական վիճակի պատրվակով», այնուամենայնիվ իրականում նեգրերի և հնդիկների ճնշող մեծամասնությունը զրկվում է ընտրություններին մասնակցելուց: Օրինակ՝ Հարավային նահանգների նեգր բնակչության ձայնի իրավունքը խլվում է գոյություն ունեցող կրթական ցենզի միջոցով (նեգրերին չափազանց բծախնդիր քննության են ենթարկում գրագիտությունից, անգլերեն լեզվից և այլն), նմանապես և բացահայտ ջիմկրոուիզմի միջոցով (նեգրերին ամեն կերպ սեղմելու սիստեմ. օրինակ՝ նրանց չեն թողնում մտնել այն տեղերը, որտեղ այցելում են սպիտակները. մի բան, որ հատկապես լայնորեն կիրառվում է Հարա-



վային նահանգներում): Սրա հետևանքով նեգրերը փաստորեն զրկվում են սպիտակների հետ միասին քվեատուփերին մոտենալու հնարավորությունից:

Վերջին հաշվով ընտրություններին մասնակցում է նեգր բնակչության 15 տոկոսից վոչ ավելին:

Բնորոշ է, որ վերջին 50 տարվա ընթացքում միայն մի անգամ է նեգրի հաջողվել ընտրվել կոնգրեսում (պարլամենտ):

Իլֆը և Պետրովը, իրենց «Մի հարկանի Ամերիկան» գրքում նկարագրելով ժամանակակից Ամերիկայի նեգրերի կյանքի պայմանները, ցույց են տալիս նեգրերի սարսափելի իրավազրկությունը «քաղաքակիրթ», «դեմոկրատական» Ամերիկայի Միացյալ Նահանգներում: Նրանք գրում են, որ նեգրերից գրեթե խլված է զարգանալու և աճելու հնարավորությունը: Քաղաքներում նրանց առաջ բաց է միայն շվեյցարի և լիֆտապանի ասպարեզը, իսկ հայրենիքում՝ Հարավային Նահանգներում նրանք իրավազուրկ բատրակներ են, ընտանի կենդանիների դրության հասած, և ըստ էության ստրուկ են մնում:

Նույնիսկ Հյուսիսում, հենց Նյու-Յոր-

քում, դրեթե նեգր չեք տեսնի ճաշարանում, կինոյում և մինչև անգամ յեկեղեցում: Գուցե միայն կարելի յե տեսնել վորպես շվեյցար, մատուցող կամ լիֆտապան: Իլֆը և Պետրովը Նյու–Յորքում ներկա յեն յեղել հայտնի նեգր յերգչուհի Մարիան Անդերսոնի համերգին. այդտեղ նրանք տեսել են նեգր ինտելիգենտների մի փոքր խումբ, վորը միանգամայն մեկուսի նստած է յեղել վերնասրահում, մի ինչ վոր տեղ:

Իլֆը և Պետրովը պատմում են հետևյալ եպիզոդը, վորը ցայտուն կերպով պատկերում է նեգրերի քաղաքական իրավազրկությունը:

«Ըստ որենքի, նեգրերը Միացյալ Նահանգների ազատ քաղաքացիներ են, սակայն Հարավում զանազան պատրվակներով նրանց զրկում են ձայնի իրավունքից. իսկ հենց Վաշինգտոնում, հենց նույն այն շենքում, վորտեղ գտնվում են որենքները, տեղի յե ունեցել այսպիսի մի դեպք.

Չիկագո քաղաքից կոնգրեսի անդամ է ընտրվել մի նեգր, Դեպրիստ ազգանունով: Ի դառնություն կոնգրեսի սպիտակ անդամների, այդ նեգրը նրանց հետ միասին նըս–



տում էր ներկայացուցիչների պալատի ժողովներին: Բայց այդ դեռ բոլորը չէր: Այս սև մարդն իր սև քարտուղարի հետ միասին սովորություն էր դարձրել գնալ կոնգրեսի ճաշարանը ճաշելու: Նրան չէր կարելի դուրս անել, իսկ լռելյայն կատարվող ցույցերին նա վոչ մի ուշադրություն չէր դարձնում: Այդ դրությունից դուրս գալու համար վերջիվերջո գտան մի հիանալի միջոց—ճաշարանը փակեցին: Կոնգրեսի ճաշարանը բոլորովին փակեցին միայն այն բանի համար, վոր նեգրը չկարողանա ճաշել սպիտակ մարդկանց հետ միասին»:

Նույն այդ Ամերիկայի մի շարք նահանգներում (Կալիֆորնիա, Նեվադա և Որիգոն) բոլոր չինացիները և արևելյան ժողովուրդների մյուս ներկայացուցիչները ձայնի իրավունք չունեն:

Մեծ Բրիտանիայի գաղութների բազմաթիվ բնակչությունը նույնպես զրկված է ընտրական իրավունքներից:

Այն սահմանադրության համաձայն, վոր անգլիական պարլամենտն ու թագավորը 1935 թ. ոգոստոսին շնորհեցին Հնդկաստանին, ընտրական իրավունք է ստանում Հնդկաստանի բնակչության միայն 10 տոկոսը

(բնտրական իրավունքից զրկված և Հնդկաստանի ամբողջ աշխատավոր բնակչությունը)։

«Սարկական սահմանադրություն»— ահա այսպես են կոչում այդ «շնորհված» սահմանադրությունը Հնդիկ ժողովրդի միլիոնավոր մասսաները։ Հարավ—Աֆրիկյան Միության մեջ— վորը մտնում է մեծ Բրիտանիայի կազմի մեջ— ձայնի իրավունքից օգտվում են 2,5 միլիոն սպիտակներ, իսկ 5,5 միլիոն նեգրերը զրկված են այդ իրավունքից։

Ֆրանսիայի բազմամիլիոն գաղութային բնակչությունը միայն համարվում է Ֆրանսիայի «հպատակ», բայց վոչ «քաղաքացի»։ Քաղաքացու կոչում` տալը թույլատրվում է միայն վորպես հատուկ արտոնություն։ Ֆրանսիական գաղութների 60 միլիոնանոց ընիկ ազգաբնակությունը միանգամայն զրկված է ընտրական իրավունքից։

Լեհաստանում ազգային փոքրամասնությունների (ուկրաինացիներ, բելոռուսներ, հրեաներ և այլն) իրավունքները սահմանափակելու համար կառավարող դասակարգերը յերկիրը բաժանել են ընտրական շրջանների` այն հաշվով, վոր ապահովեն



լեհերի արտոնյալ դրությունը։ Որինակ՝ զուտ լեհական Կրակովի շրջանում սեյմի պատգամավորն ընտրվում է 48 հազար հոգու կողմից, իսկ Կշեմենեցի ուկրաինական շրջանում՝ 96 հազար հոգու կողմից։

Ազգային փոքրամասնությունների բացահայտ իրավազրկություն գոյություն ունի ֆաշիզմի յերկրներում և առաջին հերթին՝ Գերմանիայում։

Այսպես կոչված «Կայսրության քաղաքացիության վերաբերյալ որենքի» համաձայն, Գերմանիայի ամբողջ բնակչությունը բաժանվում է «պետության հպատակների» և «կայսրության քաղաքացիների»։ «Կայսրության քաղաքացիների» թվին են պատկանում միայն արիական ծագում ունեցող քաղաքացիները (այսինքն՝ «գերմանական կամ դրան ազգակից արյունակիցները»։ «Պետության հպատակները» զրկված են քաղաքացիական իրավունքներից, մասնավորապես ընտրական իրավունքից (1936 թ. մարտի 7-ին տեղի ունեցած այսպիսապի «ընտրությունների» նրանք արդեն չըմասնակցեցին)։ Ֆաշիստական Գերմանիայում առանձին որենքների մեջ մտցված են այսպես կոչված արիական պարագրաֆ—

ներ, որոնք ուղղված են ազգային փոքրամասնությունների դեմ: Այդպիսին է, օրինակ, 1933 թ. ապրիլի 7-ին հրապարակված «Պրոֆմիութենական պաշտոնեության վերստեղծման օրենքը», ըստ որի «արիական ծագում չունեցող պաշտոնյաները յենթակա յեն հեռացման և հրաժարեցման»: «Ցեղին դավաճանելու» վերաբերյալ «օրենքը» (1936 թ. հուլիսի) դավաճանություն է համարում «հրեայի հրապարակային պարը գերմանուհու հետ» ևայլն:



Գրեթե բոլոր կապիտալիստական յերկրներում զինվորները և նավաստիները զրկված են ընտրությունների մասնակցելուց:

Բազմաթիվ սահմանափակումները, որոնցով կրճատվում են քաղաքացիների ընտրական իրավունքները, հասցնում են այն բանին, որ Ֆրանսիայում 42 միլիոն բնակչությունից միայն 11 ու կես միլիոնն ընտրական իրավունք ունեն, Հունգարիայում չափահաս աշխատավոր բնակչության մոտ 60 տոկոսը զրկված է ընտրական իրավունքներից:



## ԿՐԿՆԱԿԻ ՁԱՅՆԻ ԻՐԱՎՈՒՆՔ

Մի քանի յերկրներում ընտրական օրենքը հատուկ արտոնություններ է տալիս բուրժուազիային:

Անգլիայում այն անձնավորությունները, որոնք ապրում են մի ընտրական շրջանում և հողամասեր կամ ձեռնարկություններ (արդյունաբերական, առևտրական, բանկային) ունեն մի այլ ընտրական շրջանում, վայելում են յերկու ձայնի իրավունք (մեկը՝ բնակության վայրի գծով, իսկ մյուսը՝ ունեցած սեփականության վայրի գծով): Օրինակ՝ Սիտիի (Լոնդոնի հայտնի մասը, որտեղ կենտրոնացած են հզորագույն բանկեր) ընտրական շրջանում ապրում են ընդամենը միայն 11 հազար բնակիչ. բայց և այնպես Սիտին ունի 43.802 ընտրող, որոնցից 7085 հոգին Սիտիի մշտական բնակիչներ են, իսկ 36.717-ն այն մարդիկն են, որոնց սեփականությունը կենտրոնացած է Սիտիում: Այս 36.717 ընտրողները միևնույն ժամանակ ընտրական իրավունքից օգտվում են նաև իրենց բնակած տեղում: Յերկու ձայնի իրավունք են վայելում նաև

 

այն անձնավորությունները, վորոնք ունեն համալսարանական կրթություն (մի ձայնը՝ մշտական բնակության վայրում, իսկ յերկրորդը՝ համալսարանական ընտրական շրջաններից մեկում)։ Այս բանի հետևանքով Անգլիայի բուրժուական դասակարգի մոտավորապես 509 հազար ընտրողներ ոգտվում են կրկնակի ձայնի իրավունքով։

## ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐ

Բուրժուական յերկրներում (որինակ՝ Անգլիայում, Ֆրանսիայում և այլն) գոյություն ունեցող ընտրական շրջանների ամբողջ սիստեմը նպատակ ունի սահմանափակելու պրոլետարիատի իրավունքները։

Ֆրանսիայում բոլոր շրջաններն ընտրում են մեկական պատգամավոր, թեպետև ընտրական շրջանների բնակչության թիվը տատանվում է 12 հազարից մինչև 100 հազարի միջև (և նույնիսկ ավելի)։ Սրա հետևանքով 10 ագրարային շրջաններ, վորոնք ունեն 300 հազար բնակիչ, ընտրում են նույնքան պատգամավոր, վորքան



1100 հազար բնակիչ ունեցող 10 արդյունաբերական շրջաններ։

Այսպես, որինակ, Փարիզի VI շրջանը, վորտեղ ապրում է բուրժուազիան և վորն ունի 7826 ընտրող, պարլամենտ է ուղարկում մի պատգամավոր. IX շրջանի վոչ պակաս բուրժուական առաջին մասը, վորտեղ ապրում են 9845 ընտրողներ, նույնպես ընտրում է պարլամենտի մի պատգամավոր։ Մի պատգամավոր են տալիս նաև Ֆրանսիայի խուլ, գավառական Բրիանսոնի շրջանի 7134 ընտրողները, մի շրջան, վորտեղ ուժեղ է ռեակցիոն հոգևորականության և կալվածատերերի ազդեցությունը։ Դրա հետ միասին, միայն մի պատգամավոր ընտրելու իրավունք ունեն Փարիզի այնպիսի պրոլետարական արվարձաններ, ինչպիսիք են Կորբեյի շրջանի յերկրորդ մասը, վորտեղ կան 49·659 ընտրողներ, Նուազի—լը—Սեկի շրջանը, վորն ունի 41·377 ընտրողներ, կամ թե Կոլոմբ-Կուրբեվուայի շրջանը, վորտեղ ապրում են 70·628 ընտրողներ։

Այսպիսով, Փարիզի կենտրոնի մի բուրժուայի ձայնը հավասար է Փարիզի արվարձանների բանվորների 7 ձայնին։

Անգլիայում կա 595 ընտրական շրջան։

Յուրաքանչյուր շրջանում միջին թվով պետք է լինի 70 հազար բնակիչ և 50 հազար ընտրող։ Բայց իրականում ընտրական շրջանները խիստ տարբերվում են իրարից իրենց ընտրողների թվով։ Օրինակ, Ռոմֆորդում հաշվվում է 125·754 ընտրող, իսկ Ուելսի համալսարանում՝ 5121 ընտրող։ Այս երկու շրջաններն էլ հավասար թվով պատգամավորներ են տալիս։

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵԽԱՆԻԿԱՆ

Շատ կապիտալիստական երկրներում գոյություն ունեցող ընտրական սխեմի համաձայն, պարլամենտի անդամ ընտրվելու համար բոլորովին կարիք չկա ընտրություններում ստանալու բոլոր ընտրողների ձայների բացարձակ մեծամասնությունը։

Պարլամենտական մանդատ է ստանում այն թեկնածուն, որը մյուս թեկնածուների համեմատությամբ ստացել է ավելի մեծ թվով ձայն, թեկուզ և ընտրողների մեծամասնությունը նրա թեկնածության դեմ է քվեարկել։

Պարզաբանենք այս բանը պայմանական օրինակով։ Մի ընտրական շրջանում առա—



ջադրված է 4 թեկնածություն։ Թեկնածուներից մեկն ստացել է 15·000 ձայն, երկրորդը՝ 14·999, երրորդը՝ 14·500, իսկ չորրորդը՝ 5501։ Ընտրված է համարվում առաջին թեկնածուն, քանի որ նա ստացել է ամենից ավելի մեծ թվով ձայն (մի ձայնի մեծամասնությամբ) համեմատած մյուս թեկնածուների հետ։ Այսպիսով այս թեկնածուն պետք է լինի ամբողջ շրջանի բոլոր ընտրողների կարծիքների ու շահերի արտահայտիչը, այդ թվում, իհարկե, նաև այն 35 հազար ընտրողների— այսինքն՝ ճնշող մեծամասնության — որոնք նրան դեմ են քվեարկել։ Ընտրության այսպիսի կարգ գոյություն ունի, օրինակ, Անգլիայում, ԱՄՆ–ում, Ֆրանսիայում (Ֆրանսիայում՝ միայն կրկնակի քվեարկության դեպքում)։

Այսպիսի սկզբունքի կիրառումը հասցնում է այն բանին, որ մեծամասնությունը յենթարկվում է փոքրամասնությանը։ Անգլիայում, Ֆրանսիայում ընտրական կամպանիաների արդյունքները ցույց են տալիս, որ ընտրություններում հաղթանակ տարած կուսակցություններն իրականում ստացած են լինում ձայների փոքրա—

մասնություն, կամ ծայրահեղ դեպքում՝ ընտրողների կեսի ձայներից ել պակաս:

Ֆրանսիայում, որինակ, 1928 թվականին ընտրված պարլամենտի բոլոր պատգամավորներն ստացել եյին 4·830·244 ձայն, մինչդեռ չընտրված պատգամավորների ոգտին ձայն եյին տվել 6·565·085 հոգի: 1932 թվականի ընտրվածների ոգտին տրված է յեղել 5·245·867 ձայն, իսկ չընտրվածների ոգտին՝ 6·315·524 ձայն:

Այս բանի մանրամասն պատկերը մենք տեսնում ենք նաև Անգլիայում, վորտեղ՝

1922 թ. պահպանողականներն ստացել են 6·990 հազ. ձայն և պարլամենտում 344 տեղ:

1922 թ. ոպոզիցիան ստացել է 9·349 հազ. ձայն և պարլամենտում 271 տեղ:

1924 թ. պահպանողականներն ստացել են 8·545 հազ. ձայն և պարլամենտում 412 տեղ:

1924 թ. ոպոզիցիան ստացել է 9·172 հազ. ձայն և պարլամենտում 203 տեղ:

1931 թ. կառավարական կուսակցությունները (այսինքն՝ պահպանողականները, ազգային լիբերալները և ազգային բանվորական կուսակց.) ստացել են



14·539 հազ. ձայն և պարլամենտում 554 տեղ:

1931 թ. ոպոզիցիան ստացել է 6·865 հազ. ձայն և պարլամենտում միայն 56 տեղ:

Բնորոշ դեպք տեղի ունեցավ 1929 թըվականին Նորթինգում (Northing), վորտեղ՝

պահպանողականներն ստացան 15·477 ձայն,

լիբերալներն ստացան 15·473 ձայն,

բանվորական կուսակցությունն ստացավ 14·163 ձայն:

Պահպանողականն ընտրվեց 4 ձայնի մեծամասնությամբ, թեպետև հակառակորդները միասին ստացել եյին 29·636 ձայն, այսինքն՝ պահպանողականների հետ համեմատած՝ ունեյին 14·159 ձայնի մեծամասնություն:

Այդպիսի պատկեր ենք տեսնում նաև ԱՄՆ-ի բոլոր ընտրություններում, վորտեղ նույնիսկ մի շարք նախագահներ (Լինքոլն, Վիլսոն) ընտրվել են ձայների փոքրամասնությամբ:

Ֆրանսիայում այս սիստեմը (համեմատական մեծամասնության սիստեմ) կիրառվում է քվեարկության յերկրորդ տուրի

դեպքում: Ֆրանսիական օրենքի համաձայն, պարլամենտի պատգամավորն ընտրության ժամանակ պետք է ստանա տվյալ շրջանում տրված ձայների բացարձակ մեծամասնությունը (ձայների ընդհանուր թիվը պակաս չպետք է լինի տվյալ շրջանում ցուցակի մեջ մտցված բոլոր ընտրողների թվի մեկ քառորդից): Այն դեպքում, յեթե վոչ մի թեկնածու չի ստանում տրված ձայների բացարձակ մեծամասնությունը, ապա նշանակվում է յերկրորդ ընտրություն (յերկրորդ տուր), վորի ժամանակ արդեն գործում է համեմատական մեծամասնության օրենքը, այսինքն՝ ընտրված է համարվում այն թեկնածուն, վորը մյուս թեկնածուների համեմատությամբ ավելի մեծ թվով ձայն է ստանում:

Ֆրանսիական բուրժուազիան, յերկյուղ կրելով պրոլետարական շարժումից, Ֆրանսիան բաժանել է ընտրական փոքր շրջանների: Այս շրջաններում ընտրությունների առաջին տուրին մասնակցում են բոլոր կուսակցությունները, առաջադրելով իրենց թեկնածուները: Հազվագյուտ դեպքում առաջին ընտրությունների ժամանակ վորևէ կուսակցության թեկնածուն ստանում է ձայների վճռական մեծա-



մասնություն: Հարկ է լինում նշանակել քվեարկության յերկրորդ տուր: Բայց այս դեպքում սովորաբար զանազան կուսակցությունների թեկնածուները միանում են կոմունիստական կուսակցության թեկնածուի դեմ: Կոմունիստական կուսակցության թեկնածուների օգտին բոլոր շրջաններում տրվող ձայների ընդհանուր գումարը շատ մեծ է, սակայն յուրաքանչյուր առանձին շրջանում կոմունիստական կուսակցության թեկնածուի համար դժվար է մեծամասնություն ստանալ ընդդեմ մյուս կուսակցությունների միացած թեկնածուների:

Սրանով է բացատրվում, վոր 1932 թվականին կոմունիստական կուսակցության պարլամենտական թեկնածուներն ընտրություններում ստացան 800 հազար ձայն և պարլամենտ անցկացրին 12 պատգամավոր, աջ բուրժուական կուսակցությունը — հանրապետական դեմոկրատական միությունը ստացավ 1200 հազար ձայն և անցկացրեց 76 պատգամավոր, իսկ ռադիկալ — սոցիալիստները, 1850 հազար ձայն ստանալով՝ պարլամենտ անցկացրին 157 պատգամավոր:

Դուրս է գալիս, վոր ռադիկալ կուսակցության թեկնածուի ոգտին տրված մի ձայնն այնպիսի քաղաքական կշիռ է ստանում, ինչպես կոմկուսակցության թեկնածուին տրված 6 ձայնը:

Հակաֆաշիստական ժողովրդական ճակատ ստեղծելու ուղղությամբ Ֆրանսիայի կոմկուսակցության մղած վիթխարի պայքարի շնորհիվ միայն ընտրությունների դրությունը 1936 թվականին փոխվեց հոգուտ կոմկուսակցության և ժողովրդական ճակատի մյուս կուսակցությունների:

## ՎԵՐԻՆ ՊԱԼԱՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆԸ

Յեթե ստորին պալատների ընտրության դեպքում գոյություն ունի, թեկուզ և մի ամբողջ շարք սահմանափակումներով կաշկանդված, դեմոկրատական կարգ, ապա վերին պալատները կազմվում են կամ նշանակման ճանապարհով և ժառանգական կարգով (որինակ Անգլիայի լորդերի պալատը, Ճապոնիայի պերերի պալատը), կամ թե անուղղակի բազմաստիճան ընտրությունների միջոցով (որինակ՝ Ֆրանսիայի սենատը):

Բուրժուազիան վերին պալատ է ստեղ-



ծել այն նպատակով, վորպեսզի սահմանադրության շրջանակներում պատվար ստեղծի դեմոկրատական մասսաների կամքի դեմ: Վերին պալատը հսկում է ստորին պալատի վրա, կարող է դեմ դուրս գալ ստորին պալատի վորոշումներին: Բավական է թեկուզ հիշել վերջերս ստորին պալատի և վերին պալատի (սենատ) միջև ծագած այն կոնֆլիկտը, վորը պատճառ դարձավ Բլյումի կառավարության հրաժարականին: Մի ֆրանսիացի բուրժուական քաղաքական գործիչ՝ Լեֆեվր–Պոնտալի՝ բացահայտ պարզությամբ բնորոշել է վերին պալատների դերը՝ ասելով. «դեմոկրատիան պետք է սահմանափակվի պատվարներով ու ամբարտակներով: Այդպես ահա, յերկրորդ պալատը հանդիսանում է այդպիսի պատվար ու ամբարտակ»:

Ընտրողների կոլլեգայի ներկայացուցչության սիստեմը, վոր գոյություն ունի Ֆրանսիայում և վորով ընտրվում է սենատը, հաստատապես ապահովում է մանր մունիցիպալիտետների արտոնյալ վիճակը՝ խոշոր արդյունաբերական կենտրոնների մունիցիպալիտետների նկատմամբ: Մարսելը, վորն ունի 500 հազար բնակիչ, 24

պատվիրակ է ուղարկում իր նահանգի ընտրական կոլլեգայի մեջ, այնինչ նույնքան, որքան ուղարկում են այդ նահանգի 17 մանր ավանները, որոնք բոլորը միասին ունեն մոտ 30 հազար բնակիչ: Այսպիսով, Մարսելի ընտրողի տեսակարար կշիռը սենատի ընտրության մեջ գրեթե 20 անգամ ավելի պակաս է, քան նույն նահանգի փոքր ավանի ընտրողի տեսակարար կշիռը: Նույնպիսի դրության մեջ են գտնվում նաև Ֆրանսիայի այնպիսի խոշոր արդյունաբերական կենտրոններ, ինչպիսիք են Լիոնը, Լիլլը և այլն: Այս հանգամանքը բացահայտորեն խախտում է սենատորների թվի և առանձին նահանգների բնակչության թվի համեմատականությունը: Այսպես, օրինակ, Սենի նահանգը, որն ունի 4 ու կես միլիոն բնակիչ, ընտրում է 10 սենատոր, արդյունաբերական նահանգ Պա դը Կալեն, որն ունի մոտ 1·200 հազար բնակիչ, ընտրում է 5 սենատոր, իսկ Վերին Սավոյայի հետ ընկած նահանգը, որտեղ կա միայն 245 հազար բնակիչ, տալիս է 3 սենատոր: Սենի նահանգում մեկ սենատոր ընկնում է 450 հազար բնակչի, իսկ Վերին Սավոյայում՝ 80 հազար բնակչի:



Սենատի բազմաստիճան ընտրությունները ըստ էության զրկում են աշխատավոր մասսաներին սենատի ընտրությունից: Ֆրանսիացի պրոֆեսոր Բարտելեմիի խոսքերով՝ սենատն ընտրվում է 75 հազար բուրժուաների կողմից:

Անգլիայում վերին պալատը բաղկացած է լորդերից—որոնք այդ իրավունքն ստացել են ժառանգաբար կամ նշանակմամբ—4 տոհմական պրինցից, ժառանգական պերերից, 2 արքեպիսկոպոսից, 24 եպիսկոպոսից, 3 դատական լորդերից և այլն:

Ճապոնական պարլամենտի վերին պալատը—պերերի պալատը բաղկացած է 16 տոհմական պրինցից, 13 իշխանից և 30 մարկիզից, որոնք մտնում են այդ պալատի կազմի մեջ չափահաս դառնալուց հետո,—կոմսերի 17 ընտրական ներկայացուցիչներից, դեր-կոմսերի 65 ներկայացուցիչներից և բարոնների 66 ներկայացուցիչներից: Այս տիտղոսավոր ազնվականության վրա ավելանում են 121 հոգի, որոնք անհատապես նշանակվում են կայսեր կողմից՝ իրեն մատուցած «ծառայությունների» համար (սովորաբար նախկին մինիստրներ և խոշոր պաշտոնյաներ), նաև 64 ներկայացուցիչներ այն անձնավո-

րություններից, վորոնք տարեկան 300 իենից ավելի ուղղակի հարկ են վճարում, և կայսերական ակադեմիայի 4 ներկայացուցիչներ:

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ԱՌԱՋԱԴՐՎՈՒՄ ԹԵԿՆԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Անգլիայում համայնքների պալատի պատգամավորի թեկնածուն պետք է հոգուտ իր թեկնածության հավաքի մի քանի արձանագրված ընտրողների ստորագրություններ. այդ ստորագրությունները պետք է լինեն այն բլանկի վրա, վորը տալիս է ընտրությունները վարող պաշտոնյան: Այս դեպքում թեկնածուն պարտավոր է 150 ֆունտ ստեռլինգ գրավական մուծել: Այդ գումարը վերադարձվում է թեկնածուին միայն այն դեպքում, յեթե նրան հաջողվի ստանալ բոլոր տրված քվեների մեկութերորդից ավելին:

1935 թվականին տեղի ունեցած ընտրությունների ժամանակ 81 թեկնածու կորցրին իրենց մուծած գրավականները:

Մի անգլիական թերթ հետևյալ կերպ է նկարագրում, թե, ինչպես անգլիական



պարլամենտի թեկնածուն հարկադրված է լինում դրամ վատնել, վորպեսզի ընտրվի.

«Տուիկկենհեմի ընտրական շրջանում, Ռիչմոնդի մոտ, պարլամենտի անդամից պահանջում եյին վճարել տարեկան հազար ֆունտ և ընտրական կամպանիայի ծախքերը: Միդլեսեկսում, Սպելտորնի շրջանում, այդ սակագինը կազմում եր 500—550 ֆունտ...

Լոնդոնի մի այլ շրջանում պարլամենտի անդամը մի տարում ծախսել է 3000 ֆունտ, վորպեսզի ապահովի իր վերընտրությունը:

Ինչի՞ համար է նա այդքան դրամ ծախսել: Ո՞ւր են գնում այն դրամները, վոր վճարում են տորիները (պահպանողականներ) մանդատ ստանալու հույսով:

Ամենից առաջ այդ դրամները ծախսվում են այն գործակալի վրա, վորը ղեկավարում է տորիների տեղական կազմակերպությունը: Այդ գործակալը, վորպես կանոն, ստանում է ,տարեկան 350 ֆունտ, աշխատում է լարված կերպով, շարունակ քննում է հիմար, ամբարտավան, գոռոզ հարուստներին...

Այդ գործակալը սարքում է ամեն տեսակ յերեկույթներ, բանկետներ, ժողով-

ներ, ինչպես և միտինգներ, վորոնց համար լավ ռեկլամ է արվում, իսկ այդ բանկետներում, ժողովներում մեծապատիվ ջերեվելիները նստում են առաջին շարքում, այդպիսով առավել հետամնաց ընտրողների մեջ այն տպավորությունն ստեղծելով, թե՝ «հենց այս կուսակցությունը պետք է պաշտպանել»:

Դրամը ծախսվում է այն բանի համար, վորպեսզի թեկնածուի անունը չարունակ լինի ընտրողի աչքի առաջ, այն բանի համար, վորպեսզի ընտրողներին կոչ արվի «հայրենասիրության» և «հին դրոշի պատիվը պաշտպանելու», ինչպես և այն բանի համար—թեև այդ չի ասվում—վորպեսզի ընտրողներն իրենց շահերից ավելի գերադասեն «լավագույն մարդկանց» շահերը:

Յեթե դուք հարցնեք, թե՝ «ինչո՞ւ տորիներն ու լիբերալներն այդպիսի մեծ դրամ են ծախսում «ընտրողների մասին հոգալու» վրա, ապա պատասխանն արդեն ստացաք: Ծախսում են, վորպեսզի պահպանվի ներկա սիստեմը, վորպեսզի կառավարող դասակարգը կարողանա շարունակել կառավարել հոգուտ իրեն, վորպեսզի մասսաները հնազանդության մեջ պահվեն»:

Անգլիայի լիբերալ կուսակցության գոր-



ծիչներից մեկը—Ռ. Մյուր—իր «Ինչպես է կառավարվում Բրիտանիան» գրքում պատմում է, թե ինչպես առանձին կուսակցությունների ընտրական կոմիտեները հաճախ նախապատվություն են տալիս վորևէ այնպիսի անձնավորության, վորը պատրաստ է իր վրա վերցնել ընտրությունների ծախքերը.

«Թեկնածությունների ընտրությունը կատարում են զանազան կուսակցությունների տեղական կազմակերպությունները: Շատ հաճախ ընտրությունները վարելու համար հատկապես ստեղծվում են փոքր կոմիտեներ: Այսպիսով, շարքային ընտրողը սովորաբար վոչ մի, կամ գրեթե վոչ մի պատկերացում չունի, թե ինչպես է թեկնածու ընտրվում: Քանի վոր ընտրությունները շատ մեծ ծախք են պատճառում, ուստի հիշյալ ընտրական կոմիտեները հաճախ նախապատվություն են տալիս այդ ծախքերը հանձն առնելու պատրաստակամություն հայտնող վորևէ անձնավորության, նույնիսկ այն դեպքում, յերբ այդ անձնավորությունը բավարար չափով չի համապատասխանում: Մի այլ դեպքում նախապատվությունը տրվում է տրեդյունիոնի ֆունկցիոներին. յեթե տրեդյունիոնը ցան-

կանում է իր ֆունկցիաները մտցնել պալատ, ապա հանձն է առնում ընտրությունների ծախքերը վճարել իր դրամարկղից: Կամ թե, վերջապես, առաջ է քաշվում կուսակցության կազմակերպության կողմից հանձնարարված մի անձնավորություն, վորը և հանձն է առնում բոլոր ծախքերը:

Վորոշ դեպքերում, յեթե վստահություն կա, վոր տվյալ կուսակցությունը տվյալ ընտրական շրջանում ակնհայտ մեծամասնություն կշահի, առաջադրվում է միայն մի թեկնածություն: Այս «ապահովված մանդատները», յեթե դրանք պետք չեն լինում կուսակցության լիդերներին, հաճախ տըրվում են այն մարդկանց, վորոնք դրա համար մեծ գումարներ են մուծում կուսակցության գաղտնի ֆոնդը, թեև հաճախ այդ անձնավորությունները բավականաչափ չեն հասկանում քաղաքականությունից, վորպեսզի պառլամենտական պայքար մղեն: Այդպիսի ընտրական շրջանների այն բոլոր ընտրողները, վորոնք կողմնակից չեն մեծամասնության կուսակցությանը, փաստորեն զրկվում են քվեարկելու հնարավորությունից: Պատահում է, վոր նրանք բոլորովին չեն քվեարկում,



քանի վոր հնարավորություն չունեն ճիշտ օգտվելու իրենց ձայնի իրավունքից և այդպիսով զրկվում են դեպքերի ընթացքի վրա ազդելու հնարավորությունից»:

Ամերիկայի Միացյալ Նահանգներում նախագահի թեկնածուներն ընտրում են հանրապետական և դեմոկրատական կուսակցությունների ազգային կոնվենտները (համագումարներ): Ազգային կոնվենտները միշտ գումարվում են նախագահական ընտրությունից մի քանի ամիս առաջ: Կոնվենտ են գալիս ավելի քան 1000 պատվիրակ: 1928 թվականին հանրապետականների կոնվենտին ներկա եյին 1089 պատվիրակ, իսկ դեմոկրատների կոնվենտին՝ 1100 պատվիրակ:

Բացի պատվիրակներից, յերկրի բոլոր ծայրերից ազգային կոնվենտ են գալիս 10 հազարից ավելի հյուրեր: Յերբեմն ազգային կոնվենտների համար պատրաստվում են հատուկ շինություններ: Այն քաղաքը, վորտեղ հրավիրված է ազգային կոնվենտը, բացի հյուրերից, նիստերն սկսվելուց մի քանի շաբաթ առաջ լցվում է ժուռնալիստներով և ամբողջ յերկրի թղթակիցներով, քաղաքական և բորսայական մակլերներով, ինտրիգների սիրահարնե-

րով, տուրիստներով, պատարկապորտներով և նմանօրինակ այլ անձնավորություններով: Այն քաղաքը, վորտեղ գումարված է կոնվենտը, մի քանի շաբթով վերածվում է քաղաքական առնավաճառի և սպեկուլյատիվ բորսայի: Մարդիկ հսկայական պլաններ են կազմում, խոշոր գործարքներ են կնքում՝ ելնելով կոնվենտում տիրող դրությունից: Փորձառու գործարարները նախապես իրազեկ են լինում, վոր յեթե կոնվենտը կանգ առնի այսինչի թեկնածության վրա, ապա այսինչ քաղաքական գործարարը կլինի ֆինանսների մինիստր, իսկ այդ դեպքում այսինչ կամ այնինչ ֆիրմաներն ու ընկերությունները վայելելու յեն կառավարության աջակցությունն ու հովանավորությունը: Կոնվենտի վախճանից կախված է մի շարք տրեստների ակցիաների վիճակը: Ֆիրմաներն իրենց հաշիվները կապում են թեկնածուների հետ: Գրազ են բռնում:

Յերբ ազգային կոմիտեն սկսում է վորոշել կոնվենտի գումարման տեղի հարցը, տաք վեճ է առաջանում առանձին նահանգների ներկայացուցիչների միջև: Յուրաքանչյուրը ձգում է դեպի իր կողմ: Յերբեմն վորոշ քաղաքներ մեծ գումարներ են



առաջարկում կուսակցական կազմակերպություններին՝ այդ հարցն իրենց օգտին լուծելու համար: 1900 թվականին Ֆիլադելֆիան հանրապետական կուսակցության ազգային կոմիտեյին խոստացավ 100 հազար դոլլար, իսկ Կանզաս-Սիտին դեմոկրատներին առաջարկեց 50 հազար դոլլար և հանձն առավ վճարել կոնվենտի հրավիրման հետ կապված ծախքերը:

Ֆրանսիայում թեկնածուն պարտավոր է 24 ժամվա ընթացքում վճարել այն բոլոր ծախքերը, վոր յուրաքանչյուր ընտրական մասում սահմանում է հատուկ հանձնաժողով: Ճապոնիայում իր թեկնածությունն առաջադրող անձնավորությունը պարտավոր է 2 հազար իեն գրավական դնել: Յեթե տվյալ թեկնածուն հարկ յեղած չափով ձայն չստանա, ապա գրավականը բռնագրավվում է:

Այս բոլոր սահմանափակումների նպատակն է դժվարացնել բանվոր դասակարգի և չքավոր գյուղացիության ներկայացուցիչների թեկնածության առաջադրումը:

Խորհրդային յերկրի մեջ պատգամավորի թեկնածուն հարկադրված չէ մտածելու ընտրությունների հետ կապված ծախքերը վճարելու մասին:

«ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրության կանոնադրությունը» պետության վրա չի դնում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կատարման հետ կապված բոլոր ծախքերը:

## ԻՆՉՊԵՍ ԵՆ «ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՒՄ» ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Բուրժուական կուսակցություններն ահագին միջոցներ են ծախսում ընտրական կամպանիաների վրա: Պրոֆեսոր Մերրիամի հաշվարկումներով՝ Ամերիկայում բուրժուազիայի խոշորագույն կուսակցությունները — հանրապետական և դեմոկրատական— նախագահական ընտրությունների վրա ծախսում են մոտ 20 միլիոն դոլլար: Այս միջոցները ծախսվում են քվեներ գնելու վրա, վարձկան գործակալներ պահելու վրա, ընտրական պրոպագանդայի վրա:

Այս կուսակցությունները հսկայական միջոցներ են ստանում կապիտալի խոշորագույն մագնատներից, որոնք շահագրգռված են այս կամ այն թեկնածությամբ: Օրինակ՝ հայտնի հարուստներ Պերրի Բելմոնտը և Թոմաս Ռեյնը 1904 թվականին



դեմոկրատներին 500-հազարական ռուբլի յեն տվել՝ պահպանողական Պարկերին նախագահ ընտրելու օգտին կամպանիա մղելու համար: Տաֆտը 1912 թվականին հանրապետականներին նվիրել է 150 հազար դոլլար. Ինսուլը 1926 թվականին սենատի ընտրության առթիվ 125 հազար դոլլար է նվիրել հանրապետականներին:

1933 թվականին ճապոնական մի խոշոր հրապարակախոս ասում եր հայտնի ֆրանսիացի կին գրող Անդրե Վիոլլիսին. «Տեսա՞ք արդյոք, թե ինչպիսի հոյակապ շենքերում են տեղավորված մեր ճապոնական խոշոր կուսակցությունների գլխավոր բնակարանները: Նրանք ընտրությունների ժամանակ իրենց տնօրինության տակ ունեն գլխապտույտ առաջացնող գումարներ... Վո՞րտեղից են այդ դրամները: Յուրաքանչյուր տրեստ, յուրաքանչյուր մեծ բանկ, արդյունաբերողների յուրաքանչյուր խմբակցություն ունի իր կուսակցությունը, որին առատորեն դրամ է հայթայթում: Սկանդալները, հրեշավոր կաշառքներն ամենօրյա յերևույթ են: Վերջերս մինիստրներից մեկը—այն էլ ոչ ամենաաննշաններից— մերկացվեց այն բանում, որ առատ կաշառքներ եր ստացել հասարակաց

տների տերերից, վորոնք ցանկանում եյին իրենց հաստատությունների համար ստանալ մայրաքաղաքի նոր կվարտալի առավել գեղեցիկ մասը... 1927 թվականին տրվեց ընդհանուր ընտրական իրավունք... Ընտրություններ... Այդ ընտրությունները կատարվում են տեռորի և դրամի օգնությամբ: Պատգամավորներն ստանում են 3000 իեն ռոճիկ, իսկ պատգամավոր ընտրվելը նստում է 50 հազար իեն... Յուրաքանչյուր կուսակցություն ունի վարձկան ինգայդաների բանակ—դրանք կոնդոտյերներ ու խարդախներ են, վորոնց միջոցով պրոպագանդ է մղվում և ընտրողներին ուղղակի կաշառք է տրվում: Մի տեղ կարելի յե ընտրողի քվեն գնել մեկ իենով, մի այլ տեղ՝ 8 կամ 10 իենով»:

Ամերիկայում հսկայական գումարներ են ծախսվում այն գրականության հրատարակման և ռադիոհաղորդումների վրա, վոր կատարում է ընտրական կոմիտեյի ռեկլամի բաժինը: Դրամ են ծախսում ավտոմեքենաներ վարձելու համար, վորպեսզի ընտրողներին քվեատուփերի մոտ տանեն, ինչպես և մարդիկ վարձելու համար, վորոնք պետք է հետևեն, վոր այդ ավտոմեքենաները վոչ մի բոպե պարապ չկանգնեն:



Այս գումարների բավական մեծ մասը մտնում է պրոֆեսիոնալների գրպանը, վորոնց մասնագիտությունն է ընտրողներ հավաքագրել իրենց շրջանում: Մեծ ծախք է կատարվում ընտրողներին հյուրասիրելու, ակումբի շենքեր տրամադրելու համար:

Մինչև 1888 թվականն Ամերիկայում քվեների վաճառքը տեղի յեր ունենում բացահայտ կերպով. ընտրական մասերում կային հատուկ պատուհաններ, վորոնք վըճարում եյին վաճառված քվեյի գինը: Քըվեն գնողը վաճառողին ուղեկցում եր մինչև քվեատուփը և ստուգում՝ արդյոք վաճառողն ա՞յն բյուլլետենը գցեց քվեատուփի մեջ, վորը տրված եր նրան:

Ամերիկայի ժամանակակից ընտրական բարքերը սրանից շատ չեն տարբերվում:

ԱՄՆ–ում ամեն տարի միջին հաշվով 22 ընտրություն է տեղի ունենում: Թեկնածությունները, սկսած նախագահականից մինչև գյուղական ավագներինը, առաջադրվում են կուսակցությունների գծով: Ընտրողներ վորսալու, կաշառքի, տեռորի, ագիտացիայի համար, օրինակ, հանրապետական և դեմոկրատական կուսակցություններն ունեն կազմակերպությունների ճյուղավորված ցանց: Այս կազմակերպությունների

գլուխ են կանգնած բոսսերը (աղաները)— կուսակցական կազմակերպիչներ, մութ անձնավորություններ, յեփված պոլիտիկաններ:

Ամերիկյան հայտնի պրոֆեսոր Մերրիամը խոսելով բոսսերի մասին, գրում է՝ «Բոսսը նշում և ընտրում է օրենսդրական, գործադիր, դատական պաշտոնյաներ, նշանակում և գործից հեռացնում է պաշտոնատար անձանց, հսկում և ուղղություն է տալիս պաշտոնական քաղաքականությանը: Նրա գաղտնի բյուրոն հիանալի յե, նրա հետախույզներն ու լրտեսները գտնվում են ամեն տեղ. վերջիններիցս նա արագորեն և ճիշտ տեղեկություն է ստանում հակառակորդի ուժի ու պլանների մասին, հասարակական կարծիքի ու տրամադրության մասին, տվյալ շրջանում կարևոր դեր խաղացող բոլոր ուժերի դրության մասին: Նա ունի պրոֆեսիոնալ բանակ, վորը քաղաքական կռվում լավ վարժված է»:

Բոսսերն ընտրական կամպանիաների բոլոր քաղաքական խնդիրներից հսկայական կարողություն են դիզում: Նրանց վաստակի աղբյուրները վոչ մի կասկած չեն հարուցում: Նյու-Յորքի դեմոկրատական բոսս՝ 1924 թ. մեռած Մարֆին 2 միլիոն



դոլլարի կարողություն թողեց, վորի 80 տոկոսը դիզել եր ընտրական կամպանիաների շնորհիվ:

Բոսս Կվեյդը, տարեկան 9–12 հազար դոլլար ռոճիկ ստանալով, 6 տարում դիզեց 547 հազար դոլլար, իսկ դեմոկրատական կուսակցության 14 ընտրական շրջանների ակումբի վարիչ Կերրենը 6 տարում դիզեց 662 հազար դոլլար, մինչդեռ տարեկան ստանում եր 7500 դոլլար ռոճիկ:

1931 թվականին Չիկագոյի քաղաքագլուխ ընտրված բոսս Սեմարկի կարողությունը գնահատվում եր 7 միլիոն դոլլար: Իր քաղաքական կարյերայի սկզբից մինչև 1931 թվականը Սեմարկը տարեկան 12.000 դոլլարից ավելի յեկամուտ չեր ստացել պաշտոնապես:

Ֆիլադելֆիայի վերջերս մեռած յերկու բոսսերից մեկի՝ Վերի թողած ժառանգության գնահատությունը տատանվում է 595 հազարից մինչև 5 միլիոն դոլլարի միջև, իսկ Պենրոզի ժառանգությունը՝ 744 հազարից մինչև 20 միլիոն դոլլարի միջև:

Կասկած չկա, վոր յուրաքանչյուր բոսս, վորի ձեռքով անցնում են հաշվետվության ու հաշվառման չենթարկվող խոշոր դրամական գումարներ, իրեն զուրկ չի թող-

նում: Յուրաքանչյուր պրոֆեսիոնալ քաղաքագետ հաջողությամբ մղված կամպանիայից ստանում է իր բաժինը—մեկը՝ մինիստրի պաշտոն, յերկրորդը՝ ավտոմոբիլ, յերրորդը՝ նոր կոստյում:

Դեմոկրատական կուսակցության հատուկ կազմակերպությունը, որը Նյու-Յորքում զբաղվում է ընտրություններով (ռինգ), բաղկացած է 35 շրջանային լիդերներից, որոնցից յուրաքանչյուրն իր տրամադրության տակ ունի որոշ թվով կապիտաններ (Նյու-Յորքում վերջիններիս թիվը հազարից ավելի յե), իսկ յուրաքանչյուր կապիտան իր տրամադրության տակ ունի 10–15 լեյտենանտ: Նրանք պատասխանատու յեն իրենց մասում կատարված ընտրությունների համար: Կազմակերպությունը հենվում է ակումբների խիտ ցանցի վրա: Այս ակումբներում գնվում ու վաճառվում են քվեները: 1920 թվականին Չիկագոյի շրջաններից մեկում ընտրական պաշտոնի թեկնածուն մեկական տակառ գարեջուր նվիրեց առնվազն 3 անդամ ունեցող այդպիսի յուրաքանչյուր ակումբի:

Իլֆը և Պետրովն իրենց «Մի հարկանի Ամերիկան» գրքում հետևյալ կերպով նկարագրում են, թե բուրժուական կուսակ-



ցությունների գործակալներն ինչպիսի մեթոդներով են ընտրողների քվեները ձեռք բերում հօգուտ այդ կուսակցությունների առաջադրած թեկնածուների.

«Իլլինոյս նահանգում կոնգրեսի ընտրությունը կատարելուց քիչ ժամանակ առաջ,—ասաց բժիշկը,—մեր տունը յեկավ մի մարդ, որին յես կյանքումս յերբեք չեյի տեսել: Նա հանրապետական կուսակցության «պոլիտիշեն» եր: «Պոլիտիշենը» գործարար է, մարդ, որի պրոֆեսիան հանդիսանում է քաղաքականությունը: Քաղաքականությունը նրա համար վաստակի աղբյուր է: Յես ատում եմ այդ մարդկանց տիպը—հաստամտութ, բիրտ, լպիրշ: Անպայման նրանք բերանին պահում են լորձնոտ սիգար, գլխարկը դրած են լինում խիստ թեք կերպով, ունենում են բութ աչքեր և հաստ մատին կրում են կեղծ մատանի: «Գուդ մոնին, դաք»—ասաց ինձ այդ մարդը:—«Բարև, բժիշկ, ո՞ւմն եք մտածում ձայն տալ»: Յես ցանկանում եյի խփել նրա դնչին և դուրս գցել նրան փողոց: Բայց համեմատելով մեր յերկուսի թիկունքի լայնությունը, հասկացա, որ յեթե մեզնից որևե մեկը փողոց է թռչելու, ապա ավելի շուտ այդ թռչողը յես

կլինեմ: Ուստի ես համեստությամբ ասացի, թե ձայն եմ տալու այն թեկնածուին, վորն ինձ ավելի շատ է դուր գալիս: «Լավ,— ասաց «պոլիտիշենը», — դուք, կարծեմ, մի աղջիկ ունեք, վորն արդեն չորս տարի սպասում է, վորպեսզի ուսուցչուհու պաշտոն ստանա»: Ես պատասխանեցի, վոր աղջիկ ունեմ և սպասում է: «Այդպե՞ս ուրեմն,—ասաց իմ անկոչ հյուրը,—եթե դուք ձայն տաք մեր թեկնածուին, ապա մենք կաշխատենք ձեր աղջըկան գործի դնել: Այս առթիվ մենք ձեզ հաստատապես վոչինչ չենք խոստանում: Բայց եթե դուք ձայն տաք մեր հակառակորդին, ապա այս դեպքում ես արդեն հաստատապես կարող եմ ասել, վոր ձեր աղջիկը երբևիցե աշխատանք չի ստանա, երբևիցե ուսուցչուհի չի դառնա»: Սրանով խոսակցությունը վերջացավ: «Ցտեսություն, բժիշկ,—ասաց նա հրաժեշտ տալիս,—ընտրության որը ես կանցնեմ ձեզ մոտ»: Իհարկե, ես շատ բարկացա, նույնիսկ տանջվեցի, վրդովվեցի այս անամոթության առթիվ: Բայց ընտրության որը նա իսկապես ինձ մոտ եկավ ավտոմոբիլով: Նոբէց իմ տան դռնից ներս խցկվեց նրա հաստ սիգարը: «Գուդ մոնին, դաք,—



ասաց նա,—ես կարող եմ ձեզ տանել ընտրական կայանը»: Ցավ, ինչպես գիտեք, ես նրա հետ գնացի: Ես մտածեցի, վոր վերջի վերջո միևնույն է, թե ով կընտրվի— դեմոկրա՞տ, թե հանրապետական: Իսկ աղջիկս գուցե աշխատանք ստանա: Այս բանը ես դեռ վոչվոքի չեմ պատմել, բացի ձեզնից. ամաչում եյի: Բայց միայն ես չեմ, վոր այսպիսի քաղաքական կյանքով եմ ապրում: Ամեն տեղ ռակետներ*) են, ամեն տեղ հարկադրանքն այս կամ այն ձևով հանդես է գալիս, և եթե ուզում ես իսկապես ազնիվ մարդ լինել, պետք է կոմունիստ դառնաս: Բայց դրա համար այժմ պետք է ամեն ինչ զոհաբերել: Իսկ այդ բանն ինձ համար դժվար է»:

Ամերիկայում տիրապետող դասակարգերի կուսակցությունները ընտրությունների նախորյակին ամեն միջոց ոգտագործում են իրենց թեկնածուի ոգտին ագիտացիա մղելու համար: Ասպարեզ է քաշվում ամեն ինչ՝ մինչև անգամ կինոն, ռադիոն, կաբարեն և

*) Ամերիկայում այսպես են կոչվում «պրոֆեսիոնալ» շանտաժիստները, դրամաշորթները, բանդիտները:

կրոնական քարոզիչը: Պրեզիդենտի թեկնածուների նկարները տպվում են միլիոն օրինակներով, զանազան գրքերով: Այդ նկարները զարդարվում են հիմնարկություններում ու վաճառատներում, տներում և գործարաններում, կախվում են պատերից և փակցվում սյուներին: Այդ թեկնածուների նկարներով կրծքանշաններ են ծախվում:

Սրանից քիչ են տարբերվում Յեվրոպայի կապիտալիստական յերկրների ընտրությունները:

1935 թվականին Անգլիայում տեղի ունեցած պարլամենտական ընտրությունների իրադրության մասին կարելի յե դատել այդ ժամանակվա բուրժուական թերթերից բերված հետևյալ քաղվածքներից.

«Անգլիացիներն ընդհանրապես շատ են խմում, բայց ընտրությունների օրը թեկնածուներն այնքան առատաձեռն են լինում ալքոհոլային խմիչքներ հյուրասիրելու մեջ, որ նույնիսկ ամենապնդագլուխ ընտրողները չեն դիմանում. թե պարկերում, թե նույնիսկ ճանապարհների վրա կարելի յե տեսնել ուրախ-ուրախ յերգող կամ տրտմորեն կողքից-կողք օրորվող մարդիկ» («Պարի միդի», 1935 թ. նոյեմբ. Փարիզ):



«Յերբ մի լրացուցիչ բուռն ընտրության ժամանակ յես աշխատում եյի որպես կազմակերպիչ, մի առաջարկություն ստացա, (որից յես հրաժարվեցի)—հավաքել 100 քվե՝ 10 ֆունտով» (Բեզիլ Մյուրրեյ, «Դեյլի էքսպրես»):

## ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՅԵՎ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

Ընկ. Կաշենը հետևյալ կերպ է նկարագրում ընտրական կամպանիաներում ֆրանսիական բուրժուական մամուլի ունեցած դերն ու նշանակությունը.

«Բոլոր բուրժուական թերթերը զազրելի, գրպարտական կամպանիա յեն մղում պրոլետարական թեկնածուների և նրանց կուսակցությունների դեմ: Բուրժուական մամուլը ճգնում է խուճապային սարսափի տրամադրություն ստեղծել հեղափոխական գաղափարների հանդեպ: Չպետք է մոռանալ, որ Ֆրանսիայում ամեն օր միլիոնավոր օրինակներով բուրժուական թերթեր են տարածվում, որոնք թափանցում են բոլոր տները և տարածում նողկալի հերյուրանքներ, մանավանդ կոմունիզմի դեմ: Ընտ-

րական կամպանիայի ժամանակ այս պրոպագանդը հասնում է ծայրահեղ աստիճանի: Բուրժուազիայի թեկնածուները, որոնք բավականաչափ դրամ են ստանում բանկերից ու կապիտալիստական ֆիրմաներից, շուկան տառացիորեն հեղեղում են հակակոմունիստական գրականությամբ, հակակոմունիստական բրոշյուրները հատուկ ծրարով ուղարկում են յուրաքանչյուր ընտրողի տունը: Գործատերերն սպառնում են իրենց բանվորներին հեռացնել աշխատանքից, յեթե վերջիններս ձայն տան հեղափոխական թեկնածուներին: Նվերներ են տրվում այն մարդկանց, ովքեր կաշառվում են. իսկ այդպիսի մարդիկ քիչ չեն: Ասպարեզ է գալիս յեկեղեցին, վորն անողոքաբար պայքարում է կոմունիստական բանվորների դեմ» («Բուրժուական յերկրների սահմանադրությունները», հ. 1, եջ 63):

Ընտրությունների ժամանակ բուրժուական մամուլի հանդես բերած վարքի մասին դատելու համար պետք է գիտենալ, թե ում ձեռքումն է գտնվում այդ մամուլը: Ամերիկայի Միացյալ Նահանգների ամբողջ մամուլի 80 տոկոսը գտնվում է յերկու բուրժուական կուսակցությունների— հան-



րապետական և դեմոկրատական կուսակցությունների ձեռքում:

Ամերիկյան ժուռնալիստ Ջորջ Սելդեսն իր «Մամուլի ազատություն» գրքում բերում է «Նյու-Յորք Տրիբուն» թերթի խմբագիր Ջոն Սուինտոնի յելույթը, վորը բուրժուական մամուլի վաճառվածությունը բնորոշում է հետևյալ խոսքերով.

«Ամերիկայում անկախ մամուլ չկա... Դուք այդ բանն այնքան լավ գիտեք, վորքան յես:

Մեր մեջ չկա վոչ մի մարդ, վորը սիրտ անի իր կարծիքն ազնվորեն արտահայտել թերթում: Իսկ յեթե նա գրի էլ այն, ինչ ինքը մտածում է, ապա դա յերբևիցե չի տպվի:

Յես ամսական 150 դոլլար եմ ստանում այն բանի համար, վոր իմ ազնիվ մտքերը թաքցնում են իմ խմբագրած թերթից: Դուք դրամ եք ստանում նույն այդ բանի համար: Յեթե յես սիրտ անեմ թերթը լույս ընծայել ազնվորեն, ապա յես կթռչեմ թերթից 24 ժամվա ընթացքում:

Նյու-Յորքի ժուռնալիստի պրոֆեսիան այն է, վոր աղավաղի ճշմարտությունը, անամոթաբար ստի, խեղաթյուրի փաստերը, դրպարտի, թավալվի կապիտալի վոտ—

քերի առաջ և քրտինքը յերեսին վաճառի իր յերկիրն ու իր ժողովուրդը:

Մենք վասալներն ու գործիքներն ենք հարուստ մարդկանց, վորոնք թաքնվում են մամուլի կուլիսների հետեվում:

Մենք «ինտելեկտուալ պոռնիկներ ենք»:

Անգլիայում գրեթե ամբողջ մամուլը գտնվում է կապիտալի խոշոր մագնատների մենաշնորհի տակ:

«Լոնդոնցիների կեսից ավելին կարդում են լորդ Ռոտերմիրի կամ լորդ Բիվերբրուկի թերթերը: Այս լորդերի պալատները, ապաստանած Բուկինհեմի պալատի հովանու տակ, ուղղակի թելերով կապված են Ֆլիտ-ստրիտի*) հետ:

Լորդերը կատարյալ հնազանդության մեջ են պահում իրենց խմբագիրներին և ամբողջ խմբագրական անձնակազմին: Նրանց թերթերը չեն կարող մի այնպիսի բան տպագրել, վորն այսպես թե այնպես հայտնաբերի կապիտալիստական սիստեմի թեկուզ փոքրագույն խոցերը, նրանք պարտավոր են բոլոր հաղորդագրությունները գունա-

*) Լոնդոնի մի փողոցը, վորտեղ կենտրոնացած են խոշորագույն խմբագրական-հրատարակչական ձեռնարկությունները:



վորել լորդերի ընդհանուր քաղաքական գծին համապատասխան, բայց չպետք է համարձակվեն իրենց տերերի հայացքներին հակառակ հայացք արտահայտել, բացառությամբ հռչակավոր մարդկանց հավլապյուտ սենսացիոն հոդվածների:

Լոնդոնի մնացած թերթերը գրեթե ամբողջությամբ պատկանում են «Դեյլի Հերալդ»-ին, վորն անվանապես Մակդոնալդի ու Թոմասի ստեղծած կուսակցության որգանն է, բայց փաստորեն հանդիսանում է մի առևտրական ձեռնարկություն, վոր պատկանում է մի խումբ գործարարների, ուստի և յենթարկվում է կապիտալիստական սիստեմի բոլոր որենքներին: Այս թերթերում սոցիալիզմ քարոզել թույլատրվում է միայն յերկու պայմանով. 1) յեթե հոդվածը չի պարունակում ԽՍՀՄ-ի հասցեյին ուղղված վորևե գովասանական խոսք կամ թագավորի ու կրոնի վերաբերմամբ վորևե վոչ-հարգալից կարծիք. 2) յեթե հեղինակի անունն այնքան է աչքի ընկել, վոր կարելի յե չվախենալ, թե նրա գրածը լուրջ բանի տեղ կընդունվի» («Ջա Ռուբեժոմ» № 26, 1936 թ.):

Ճապոնական թերթերում չափազանց տարածված է մի այսպիսի յերևույթ,—ընտա-

բական կամ վորևէ այլ կոմպանիայի ժամանակ բուրժուական կուսակցությունները և կապիտալի մագնատները գնում են թերթերն ամբողջությամբ, և վերջինս տալիս է այնպիսի դրույթ, վորը լիովին համապատասխանում է գնողի շահերին: Բայց, վորպես կանոն, թերթերն իրենց սյունակներում տեղ են ծախում ցանկացած քաղաքական ուղղության պատկանող առանձին հոդվածներ տպագրելու համար (իհարկե, բացի հեղափոխական ուղղությունից): Այդ պատճառով էլ միևնույն թերթը համարյա միշտ հակասական հոդվածներ է տպագրում նույնիսկ միևնույն համարում կամ մի համարից հետո: Թերթը դրա համար դրամ է ստանում, իսկ մնացածը նրան չի հետաքրքրում:

## ՏԵՌՈՐ ՅԵՎ ՃՆՇՈՒՄ

Մի որինակ բերենք Իսպանիայի 1934 թվականի ընտրական պայքարից.

«Ցես մի քանի որինակ եմ բերում, թե ինչպես մեզ մոտ անպատկառորեն ու բացահայտորեն գողանում եյին քվեները: Իշ-



խում էր տեռորը, մեր թեկնածուներից շատերը ձերբակալված եյին, մի քանի տեղերում ընտրական բյուրոները նույնիսկ բաց չարվեցին՝ բանվորներին քվեարկելու հնարավորություն չտալու համար... Սեվիլիայի նահանգում մեր ստացած ձայների թիվը «հաշվեցին» 2 հազար, բայց յեթե քվեարկությունը վերցնենք ըստ գյուղերի, ապա կտեսնենք, վոր միայն յերկու գյուղում մեզ տրված ձայների թիվն արդեն ավելի յե 2 հազարից... իսկ այս ընտրական շրջանում կա 70 գյուղ... Մի քանի գյուղերում ընտրական բյուրոները մինչև անգամ չբացվեցին, և քահանան զանգերը տալով հայտարարեց գյուղացիներին, թե՝ «մենք ձեր քվեները տվինք նրանց, ովքեր արժանի յեն դրան, այդ պատճառով էլ ընտրական բյուրոները փակ են» (Երնանդես—«Իսպանիայի Կոմկուսակցության այժմեական հարցերը». «Կոմունիստական Ինտերնացիոնալ» № 6, եջ 21, 1934 թ.):

Բերենք 1936 թվականին Իսպանիայում տեղի ունեցած ընտրությունների նկարագրությունը, յերբ հաղթանակ տարավ հակաֆաշիստական ժողովրդական ճակատը, չնայած ֆաշիզմի և բուրժուազիայի բոլոր խարամանկությունների:

«Այժմ,— գրում էր այն ժամանակ շվեյցարական «Բունդշաու» թերթը,— վոստիկանությունն ամեն կերպ աշխատում է ձերբակալել կոմունիստական կուսակցության ղեկավարներին, վորպեսզի ընտրությունների ժամանակ նրանց բանտում պահի: Վերջերս ձերբակալվեց Դոլորես Իբարրուրին (Պասիոնարիա)՝ այն «խռովարարական խոսքերի» համար, վոր արտասանել էր մի քանի ամիս առաջ մի միտինգում: Ապա բռնվեց Վիսենտե Ուրիբին, վորը կես տարի առաջ մասնակցել էր միտինգի»:

Ֆրանսիական «Էքսելսիոր» թերթն Իսպանիայի 1936 թ. ընտրությունների մասին գրում էր.

«Ընտրության որվա յերեկոյան արդեն կային 4 սպանված և 40 վիրավոր: Սարագոսայում մի սոցիալիստ սպանվեց իր քաղաքական հակառակորդների ձեռքով: Կարոնիայում տեղի ունեցած ընդհարման ժամանակ ազգային գվարդիայի զինվորների ձեռքով սպանվեց մի կոմունիստ և գողացվեց մի լրագրավաճառ: Լրագրավաճառին փախցնողները ստիպեցին քացախի եսենցիա խմել, վորի հետևանքով նա մեռավ:

Աստուրիայում տեղի ունեցավ յերկու ընդհարում, վորի հետևանքով վիրավորվե-



ցին մի քանի մարդ, վորոնց թվումն է գտնվում Խիլ Ռոբլեսի կուսակցության տեղական պարագլուխը: Նավարրայի գավառում սպանվեց կոմկուսակցության մի անդամ:

Պրեմո դը Ռիվերայի ֆաշիստական կուսակցության 10 յերիտասարդ անդամներ առավոտյան մտան ընտրական կայանը և ներկաներին սպառնալիք կարդացին ատրճանակներով: Նրանք ոգտվեցին խուճապից, վորպեսզի քվեատուփը լցնեն իրենց բյուլետեններով: Ապա ձերբակալելով քաղաքային նոտարիուսներին, նրանք աշխատում էին խանգարել արձանագրության որինական ձևակերպումը»:

Թե ինչ վտանգների հետ էր կապված թեկնածուի կյանքն ընտրությունների ժամանակ, այդ վկայում է ֆրանսիական «Պտի Պարիզյեն» թերթի հետևյալ հաղորդագրությունը.

«Պլակատների արանքում փակցված է նաև մի խոշոր ապահովագրական ընկերության հայտարարությունը, վորը թեկնածուներին, ընտրողներին և սովորական քաղաքացիներին առաջարկում է ապահովագրվել ընտրական կամպանիայի ամեն տեսակ վտանգներից.

«Մուծեցեք 10 պեզետա, և դուք կարող եք ձեր հարազատներին թողնել 5000 պեզետի մի ամբողջ կապիտալ, յեթե դուք հանդիպեք դիժ գնդակի կամ մահացու հարվածի...»:

## «ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ» ԸՍՏ ՖԱՇԻԶՄԻ

Ֆաշիզմն արյունոտ կոշիկով ու կացինով ճզմեց դեմոկրատական ազատությունները, հետք անգամ չթողնելով բուրժուական դեմոկրատիայից:

«Ֆաշիզմ և իրավական սիստեմ,—ասել է ընկ. Դիմիտրովը,—միանգամայն անհամատեղելի յերկու բաներ են: Ֆաշիզմը հանդիսանում է ամեն մի իրավակարգի ժխտում: Ֆաշիզմն ըստ էության կամայականություն է: Դա խոշոր կապիտալի այն վարձկանների զինված բանդայի կամայականությունն է, վորոնք ժողովրդի ճնշող մեծամասնությունն ստրկացրել են վոչ միայն ընդհանրապես շահագործող փոքրամասնության շահերի համար, այլև հենց առավել գիշատիչ շահագործողների համար»: («Կոմունիստական Ինտերնացիոնալ» № 1, 1936 թ.):

Հիտլերը, վորն իրեն համարում է «կայսրության առաջնորդն ու կանցլերը», վոչ վո-



քի առաջ պատասխանատու չէ: Նա ինքն է իր համար հաջորդ նշանակում: Նա բոլոր հարցերը վճռում է միանձնյա: Մինիստրները յերդում են տալիս Հիտլերին և միայն նրա առաջ են պատասխանատու: Նա է նշանակում նահանգների կուսակալներին և այլն:

Ռայխստագը վերածված է բուտաֆորիայի: 1933 թ. նոյեմբերից մինչև 1936 թ. ապրիլ ռայխստագն ունեցել է ընդամենը 6 նիստ, վորոնց ընթացքում հանդես են յեկել միայն անփոփոխ հռետորներ Հիտլերն ու Հյորինգը:

Ռայխստագի պատգամավորները չեն ընտրվում, այլ նշանակվում են: Ֆաշիստական կազմակերպությունների «ղեկավարները» կազմում են թեկնածուների ցուցակը, և քվեարկություն է կատարվում: Ռայխստագի պատգամավորը կորցնում է իր մանդատը, յեթե հեռանում է «նացիոնալ-սոցիալիստական» կուսակցության շարքերից: Նրա հաջորդը նշանակվում է ռայխստագի նացիոնալ-«սոցիալիստական» ֆրակցիայի նախագահի կողմից:

Այն անձնավորությունները, վորոնք խուսափում են այդպիսի «քվեարկության» մասնակցելուց, յենթարկվում են ֆաշիստների տեռորին: Ահա, որինակ, հետևյալը վերցված է հենց ֆաշիստական «Ֆրանկֆուրտեր ցայտունգ» թերթից. «Մանաուում» շուկայի վաճառուհի տի-

կին Մյուլլերը հեռու մնաց ընտրությունների քվեարկությունից: Նրան ստիպեցին շրջել փողոցները՝ ձեռքին մի պլակատ բռնած, վորի վրա գրված էր՝ «Ես, Վախերուխենցի Նինա Մյուլլերս, չքվեարկեցի, վորովհետև ես անտարբեր եմ դեպի Գերմանիայի պատիվը»: Ապա պաշտոնապես հայտարարվեց, վոր նրան այլևս չի թույլատրվում առևտուր անել շուկայի հրապարակում»:

Ահա թե ինչպես են տեղի ունեցել գերմանական ռայխստագի ընտրությունները 1936 թվականին:

«Ընտրական բյուլլետենի տեքստը պարզ է. դրա վրա գրված է հետևյալը.

«Ազատության ու խաղաղության ռայխստագ: Ընտրական շրջան... գերմանական նացիոնալ-սոցիալիստական բանվորական կուսակցություն»:

Ապա արշինանոց տառերով տպված է գլխավոր թեկնածուի անունը —«Ադոլֆ Հիտլեր»: Նրանից հետո գալիս են մանր տառերով տպված հետևյալ անունները՝ «Հեսս, Ֆրիկ, Հյորինգ, Հեբբելս» :Այս անունների դիմաց՝ աջ կողմը կա մի շրջանակ, վորի մեջ ընտրողը պետք է խաչ նշան դնի :Ընտրողին թույլատրըվում է թվարկված անունների ս ավելացնել փաշիստական կուսա՝ .ս այն մար



դային ղեկավարի անունը, վորի գործունեության շրջանում գտնվում է տվյալ ընտրական շրջանը:

Այսպիսով, ընտրական արարողությունը հանգում է ընտրողի կողմից սեփական ձեռքով ընտրական խաչ դնելուն: Թեկնածությունների վորևէ քննարկում, վորևէ փոփոխություն չի թույլատրվում:

Կենտրոնական ընտրական հանձնաժողովը կազմել է այն թեկնածուների ցուցակը, վորոնք առաջադրված են ընտրելու: Ցուցակում կա 1035 մարդ: Առաջին 60 թեկնածուները հանդիսանում են ֆաշիստական կուսակցության կենտրոնական կազմակերպությունների անդամներ և մարզային ղեկավարներ: Ապա գալիս են զանազան «վաստակավոր» ֆաշիստներ՝ գրոհային և պահնորդական ջոկատների, աշխատանքային պարհակի պետեր և այլն:

«Հասարակական» կազմակերպությունների ներկայացուցիչներից հանդես են գալիս՝ ճակատայինների միության նախագահը, սպորտի կայսերական ղեկավարը, արհեստավորական կենտրոնի ղեկավարը և այլն: Առանձին «անվանի» մարդկանցից հիշատակվում են՝ արդյունաբերողներ Տիսսեն, Հուգենբերգ, Ցեգլեր, ինչպես նաև Վիեննայի դեսպան ֆոն Պապենը, արտակարգ դեսպան և հատուկ հանձնարարու-

թյունների համար Հիտլերի լիազոր ֆոն Ռիբենտրոպը և այլն» («Պրավդա»):

«Արտակարգ միջոցներ են գործադրվում բնակչությանը դրդելու՝ վոր մասնակցեն «ընտրություններին»: Ակնհայտորեն, ընտրողը դըժկամությամբ գնում է քվեարկության, քանի վոր հռետորներն ամեն տեսակ պատիժներով սպառնում են այն «դավաճաններին», վորոնք խուսափում են քվեարկությունից: Վոստիկանությանը կարգադրված է հոգ տանել, վոր «դանդաղողները» քվեատուփերի մոտ բերվեն: Առավել պարզության համար բոլոր քվե տվածներին կրծքանշաններ են տրվում, իսկ այդպիսի կրծքանշան չունեցող անձնավորություններին գրոհայինները «հիշեցնում են» նրանց պարտավորությունը՝ գնալու «ընտրություններին» («Պրավդա»):

Իտալիայում «Ֆաշիստական մեծ խորհուրդը»—իտալական ֆաշիստական կուսակցության գերագույն որգանը—միաժամանակ հանդիսանում է պետական գերագույն որգան: Ընտրական որենքով թույլատրվում է միայն ֆաշիստական ցուցակ կազմել՝ 1000 հոգու անունով, իսկ այդ ցուցակը կազմվում է ֆաշիստական զանազան կազմակերպությունների առաջարկությունների հիման վրա: «Ֆաշիստական գերագույն խորհուրդը» կազմում է պատգա-



մավորների ցուցակ՝ 400 հոգուց բաղկացած, ընդ վորում այդ ֆաշիստական խորհուրդն իրավունք ունի ցուցակի մեջ մտցնել նաև այնպիսի անձնավորությունների, վորոնք առաջարկված չեն կազմակերպությունների կողմից:

Դրանից հետո այդ ցուցակը միայն կարիք ունի «ընտրողների» բուտաֆորական «հաստատմանը», վորոնք պետք է պատասխանեն «այո» կամ «վոչ» (ամբողջ ցուցակի վերաբերմամբ):

Լեհաստանում, ըստ այն սահմանադրության, վոր 1935 թվականին անորինական կերպով ընդունել է սեյմը, նախագահն ոժտված է միապետի իրավունքներով: «Նա ոժտված է միակ ու անբաժանելի պետական իշխանությամբ» և «պատասխանատու յե միայն աստծու ու պատմության առաջ»:

Այդ սահմանադրությունը պարլամենտը վերածում է ֆիկցիայի: Ընկ. Մոլոտովը շատ դիպուկ կերպով է բնորոշել նմանորինակ պարլամենտները «...պարլամենտները դեռ գոյություն ունեն, բայց ծայրահեղ դեպքում՝ պետական հիմնարկների ցուցակում, թե՛ Իտալիայում, թե՛ Գերմանիայում, սակայն իրականում դրանք արդեն լուրջ բանի տեղ չեն դրվում» (Մոլոտով—«Խորհրդային Սահմանադրության մեջ կատարվող փոփոխություննե-

րի մասին»․ զեկուցում ԽՍՀՄ խորհուրդների VIII համագումարում)։

Ըստ լեհական նոր ընտրական օրենքի, թեկնածուներ առաջադրելու իրավունք տրվում է միայն ընտրական կոլեգիաներին։ Իսկ այս ընտրական կոլեգիաները կազմվում են ֆաշիստականացած ինքնավարություններից, առևտրական ու արդյունաբերական պալատներից, կուլակային-կալվածատիրական կազմակերպություններից, և միայն տեսքի համար չնչին տեղ է հատկացվում պրոֆմիութենական կազմակերպությունների ներկայացուցիչներին։ Ընտրողները կարող են սեյմի պատգամավոր ընտրել միայն այս հանձնաժողովների նշած թեկնածուների թվից։ Այսպիսով, այդ ընտրական օրենքը ժողովրդական լայն մասսաներին զրկում է սեյմի կազմի վրա ազդելու հնարավորությունից։

Բացի սրանից, ըստ լեհական նոր սահմանադրության, զգալի չափով մեծացվում են սենատի (վերին պալատ) իրավունքները։ Սենատի պատգամավոր ընտրելու իրավունք վայելում են միայն շքանշաններով պարգևատրվածները, տեղական ինքնավարության մարմինների խորհրդականները, տնտեսական կազմակերպությունների ղեկավարները, գիտական կոչում ունեցող անձնավորությունները, սպա-



ները և այլն, և այլն, այսինքն՝ կառավարող դասակարգերի ընդամենը մի քանի հարյուր հազար ներկայացուցիչներ։ Լեհաստանի ժողովրդական մասսաները ֆաշիստական ընտրական օրենքին պատասխանեցին ընտրությունները բոյկոտի յենթարկելով։

Չնայած տեռորին, բռնությանը և խաբեությանը, ընտրողների միայն 30 տոկոսը մասնակցեց ֆաշիստական թեկնածուների ընտրությանը։ Բայց և այնպես սեյմի ընտրությունը վավերացվեց։

1934 թ. մայիսի 1-ին ավստրիական կառավարության ընդունած նոր սահմանադրությունը վերացրեց ընդհանուր ու գաղտնի ընտրական իրավունքը և ժողովրդական մասսաներին զրկեց օրենսդրական ու գործադիր իշխանությունների վրա վորևէ ազդեցություն ունենալու հնարավորությունից։ Այս սահմանադրությունն օրինականացրեց ֆաշիստական դիկտատուրայի ռեժիմը, մի դիկտատուրա, վորը հենվում է ֆինանսական կապիտալի մի բուռ մագնատների, խոշոր կալվածատերերի և կաթոլիկ յեկեղեցու միության վրա։

Հանրապետական սահմանադրության առաջին հոդվածը, ըստ վորի Ավստրիան հայտարարվում էր «դեմոկրատական հանրապետություն, վորի իրավունքը յելնում է ժողովր-

դից», փոխարինվեց հետևյալ ֆեոդալական— ստրկատիրական հայտնագործությամբ. «Հանուն ամենակարող աստծո, ամենայն իրավունքի սկզբնաղբյուրի, ավստրիական ժողովուրդն իր քրիստոնեական գերմանական դաշնակցային պետության համար ստանում է այս դաշնային հիմունքով կազմված սահմանադրությունը» (Ժողովածու՝ «Բուրժուական յերկրների սահմանադրությունները», հ. II, եջ 220):

Այս սահմանադրության համաձայն, «օրենսդրական մարմին» հանդիսանում են պետական խորհուրդը, դաշնակցային կուլտուրական խորհուրդը, դաշնակցային տնտեսական խորհուրդը և մարզերի խորհուրդը: Դրանք հանդիսանում են նախնական խորհրդակցության օրգան: Հիմնական օրգանը դաշնակցային խորհրդակցությունն է:

Պետական խորհրդի անդամները նշանակվում են նախագահի կողմից՝ 10 տարով, դաշնակցային կուլտուրական խորհուրդը բաղկացած է յեկեղեցու, դպրոցների, գիտության ու արվեստի «ներկայացուցիչներից», դաշնակցային տնտեսական խորհուրդը կազմված է ֆաշիստական պրոֆմիությենական խմբերի ներկայացուցիչներից: Մարզերի խորհրդի մեջ մտնում են մարզային կառավարության 2-ական անդամներ: Դաշնակցային խորհրդակցու-



թյունը կազմված է վերոհիշյալ խորհուրդների ներկայացուցիչներից: Բացի դրանից, կա նաև դաշնակցային ժողով, վորի պարտականության մեջ մտնում է պատերազմ հայտարարելը և դաշնակցային նախագահի թեկնածու առաջադրելը:

Ովքե՞ր են մտնում ավստրիական պետության օրենսդրական մարմինների մեջ: Օրենսդրական մարմինների անդամները հանդիսանում են արդյունաբերական կոնցերնների, գործարանների դիրեկտորները, բանկերի ադմինիստրատիվ խորհուրդներում նստած մարդիկ, սպաներ և խոշոր կալվածատերեր, կաթոլիկ յեկեղեցու սյուներ և այլն: Պետական խորհրդում են գտնվում հաբսբուրգյան ժամանակների տոհմական ազնվականության շառավիղները՝ բարոն Կորետ, բարոն Մորսեյ, գրաֆ Խոյոս և այլն, նահանգների կուսակալները, վոստիկանական դիրեկտորները, ֆաշիստական ու ճակատային միլիցիայի ու բանակի հրամանատարները և այլն: Պետական և տնտեսական խորհուրդներում գտնվում են ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչները՝ ավստրիական ազգային բանկի նախագահ Կինբեկ, «Կրեդիտանշտալտ» խոշոր բանկի նախագահ, ադմինիստրատիվ խորհրդի 12 արդյունաբերական կոնցերնների անդամ Ցոխամ,

ռազմական գործարանների տեր, Մուսոլինիի խոշոր մատակարար Մանդել, խոշոր արդյունաբերող Ուրբան և այլն:

---



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ՄԻ ՇԱՐՔ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

*ԱՐԽԻԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ* (գերդեմոկրատական) — «արխի» նախածանցը (հունական «արխե» բառից, որը նշանակում է սկիզբ, գլխավորություն) դրվելով բառի սկիզբը ուժեղացնում է տվյալ բառի հիմնական նշանակությունը, ցույց է տալիս ավելի բարձր հատկություն, ավելի բարձր աստիճան, գերակշռություն: ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեի 4-րդ նստաշրջանի կողմից ընդունված «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրության Կանոնադրությունը», որն իրականացնում է Ստալինյան Սահմանադրությամբ հռչակված խորհրդային ընտրական իրավունքի մեծ սկզբունքները, կրկին անգամ ամենայն

ռազմական գործարանների տեր, Մուսոլինիի խոշոր մատակարար Մանդել, խոշոր արդյունաբերող Ուրբան և այլն:



ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ՄԻ ՇԱՐՔ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

ԱՐԽԻԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ (գերդեմոկրատական) — «արխի» նախածանցը (հունական «արխե» բառից, վորը նշանակում է սկիզբ, գլխավորություն) դրվելով բառի սկիզբը ուժեղացնում է տվյալ բառի հիմնական նշանակությունը, ցույց է տալիս ավելի բարձր հատկություն, ավելի բարձր աստիճան, գերակշռություն: ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեի 4-րդ նստաշրջանի կողմից ընդունված «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրության կանոնադրությունը», վորն իրականացնում է Ստալինյան Սահմանադրությամբ հռչակված խորհրդային ընտրական իրավունքի մեծ սկզբունքները, կրկին անգամ ամենայն

պարզությամբ և ուժով ընդգծեց մեծ Ստալինյան Հիմնական Օրենքի արխիդեմոկրատական բնույթը, «նրա հետևողական և մինչև վերջը պահպանված դեմոկրատիզմը» (Ստալին)։

ՀԵՏՏՈ.— Միջին դարում այսպես եյին կոչվում հրեական առանձին թաղամասերն արևելյան և արևմտա-յեվրոպական քաղաքներում։ Հրեաներն իրավունք ունեյին բնակվելու միայն այս թաղամասերում, վորոնք հաճախ պատերով անջատված եյին լինում քաղաքի մյուս մասերից։ Հրեա բնակչությունը խռնված եր լինում հետտո-ի փոքր տերիտորիայի վրա և ստորացուցիչ ռեժիմի ու վերաբերմունքի եր արժանանում, հետտոն ծայրահեղ արտահայտությունն եր ազգային ու կրոնական խտրության և ատելության։ Հետտոն վերջնականապես վերացվեց միայն 19-րդ դարի կեսին։ Կապիտալիստական յերկրներում գերազանցապես հրեական բնակչություն ունեցող թաղամասերը մինչև հիմա ել ըստ հիշատակի կոչվում են հետտո։

Ցարական Ռուսաստանում հետտոն հանդիսանում եր հռչակավոր «նստակեցության սահմանագիծ», վորը հրեաների բնակչու-



թյան իրավունքը սահմանափակում եր վորոշյալ շրջաններում։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը վերացրեց այս միջնադարյան ժառանգությունը, ինչպես բոլոր մյուս ազգային և ազգային-կրոնական սահմանափակումներն ու արտոնությունները։ Լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակի շնորհիվ ՍՍՀՄ-ի բոլոր իրավահավասար ժողովուրդները միաձուլվեցին մի բազմազգ ընտանիքում։

Այդ միևնույն ժամանակ գերմանական ֆաշիզմը տարածում է գազանային շովինիզմ, վոտնատակ է տալիս ազգային փոքրամասնությունների իրավունքները։ Գերմանիայում հարյուր հազարավոր հրեա քաղաքացիներ փաստորեն որենքից դուրս են հայտարարված։

ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ (կամ սոցիալիստական ՀՈՒՄԱՆԻԶՄ.— Հումանիզմը (լատինական «հումանուս» բառից, վորը նշանակում է մարդկային) սկզբում հասարակական ու գրական մի շարժում եր, վորն արտացոլում եր 14-16-րդ դարերի բարձրացող բուրժուազիայի աշխարհահայացքը և պայքարում եր մարդկային անձնավորությունը ֆեոդալիզմի կա-

պանքներից ու յեկեղեցական խավարապաշտությունից ազատելու համար:

Ավելի լայն մտքով՝ հումանիզմ նշանակում է մարդկության նկատմամբ սիրո քարոզ, ժողովուրդների յեղբայրության գաղափար, հասարակակարգի անարդարությունների ուղղում և այլն: Հումանիզմի այդպիսի քարոզով հանդես են յեկել հետագա դարաշրջաններում մարդկության լավագույն զավակները:

Իշխանության գլուխն անցած բուրժուազիան իր տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում ամեն կերպ աշխատել է հումանիզմի գաղափարն օգտագործել իր նպատակների համար: Քարոզելով ճնշվածների ու ճնշողների հաշտության գաղափարը, բուրժուազիան ձգտել է խեղդել շահագործվող մասսաների մեջ բողոքի ամեն մի զգացմունք, նրանց հաշտեցնել շահագործող դասակարգերի հետ: Այդ է յեղել ցուցադրական, ամբողջովին սուտ ու կեղծ բուրժուական «հումանիզմի» դերը:

Միայն սոցիալիստական հասարակությունն է պայքարում իսկական համաշխարհային հումանիզմի գաղափարների համար, մարդկությունն ամեն տեսակ տնտեսական, սոցիալական, քաղաքական ու հոգևոր ստր



կության կապանքներից ազատելու համար: Միայն սոցիալիստական իրականությունն է մարդկանց մեջ դաստիարակում իսկական հումանիզմի բնորոշ գծեր—ազնվություն, համարձակություն, հայրենասիրություն, կուսակցության նկատմամբ, սոցիալիզմի գործի նկատմամբ նվիրվածություն և թշնամիների նկատմամբ անողոք ատելություն, թշնամիներ, վորոնք փորձում են խափանել, արգելակել կոմունիզմի շինարարությունը, կոմունիզմ, վորի ժամանակ իրագործվում են մարդկության լավագույն զավակների դարավոր իղձերը:

Մեր ժամանակ, յերկու աշխարհի—քայքայվող կապիտալիզմի աշխարհի և հաղթական սոցիալիզմի աշխարհի —դաժան պայքարի ժամանակ իսկական հումանիստ լինել՝ նշանակում է պայքարել ճնշվածների բանակն անցած, ատել մարդկության ճնշողներին, այդ ատելությամբ տոգորել նաև ուրիշներին, դրդելով նրանց պայքարելու մարդկության ազատագրման համար:

Պրոլետարական հումանիզմի այս էությունը լավ է արտահայտել մեծագույն պրոլետարական գրող—հումանիստ Մ. Գորկին. «պրոլետարիատի հումանիզմը պահանջում է անշեջ ատելություն դեպի քաղքենի-

ությունը, դեպի կապիտալիստների իշխանությունն ու իրենց լակեյները, պորտաբույծները, ֆաշիստները և դահիճները, դեպի բանվոր դասակարգի դավաճանները, ատելություն դեպի այն բոլորը, ինչ վոր տառապանք է պատճառում, ատելություն բոլոր նրանց նկատմամբ, ովքեր ապրում են հարյուր միլիոնավոր մարդկանց տառապանքների հաշվին»:

Իսկական, սոցիալիստական հումանիզմի զգացմունքից, մարդկության բախտի նկատմամբ լեցված հոգատարությունից, ռեակցիայի, խավարամտության, կապիտալիստական գիշատչության բոլոր արտահայտությունների դեմ ուղղված ատելությունից, Պրոլետարական սոցիալիստական մեծ հեղափոխության բոլոր թշնամիների դեմ ուղղված ատելությունից են թելադրված Գորկու այն անմոռանալի, ցասմնալից խոսքերը, թե՝ «Յեթե թշնամին անձնատուր չի լինում—նրան վոչնչացնում են»: Վոչնչացնելով, սրբելով յերկրի յերեսից ժողովրդի անարգ դավաճաններին, մարդկության թշնամիներին—տրոցկիստական-բուխարինյան լրտեսական աղտեղություններին, բոլոր այդ տուխաչևսկիներին, յակիրներին, ուբորևիչներին և արյունարբու ֆաշիզմի մյուս



ծառաներին, խորհրդային դատարանը կատարում է իսկական հումանիզմի ակտեր, ծառայում է առաջավոր մարդկությանը:

ՄԻՍՏԻՖԻԿԱՑԻԱ (հունական «միստիկա» բառից, վորը նշանակում է խորհրդավորություն, գաղտնիք).—Վորևե մեկին գիտավորյալ կերպով մոլորության մեջ գցել. խաբեբայություն: Ֆաշիստների դեմ իսպանական ժողովրդի մղած պայքարին համակրանքով վերաբերվող հասարակական կարծիքի այդպիսի միստիֆիկացիա յեն հանդիսացել ֆրանսիական ու անգլիական քաղաքական գործիչների այն հավաստիացումները, թե չմիջամտելու քաղաքականությունն իբր թե վերջ կդնի Իսպանիայում գերմանական ու իտալական ֆաշիզմի կատարած ինտերվենցիային և կկանխի միջազգային կոնֆլիկտը: Այս միստիֆիկացիան յեղել է Անգլիայի ու Ֆրանսիայի դիվանագիտական ձևերից մեկը, վորով նրանք ըստ եյության օգնել են իտալո-գերմանական ինտերվենցիային Իսպանիայում:

ՌԵԶԻԴԵՆՏ (լատինական «ռեզիդենս» բառից, վորը նշանակում է մնացող, նստող): «Ռեզիդենտ» բառը գործածվում է յերեք նշանակությամբ.

1. Այդպես են կոչվում իմպերիալիստա-

կան պետությունների լիազորները գաղութների տեղական կառավարիչների մոտ, ինչպես նաև այնպիսի պետությունների կառավարիչների մոտ, վորոնք ձևական անկախություն ունեն. որինակ բրիտանական ռեզիդենտներ կամ Հնդկաստանի թագավորիկների ու մահարաջաների մոտ, ֆրանսիական ռեզիդենտներ կամ Թունիսում, Մադագասկարի սուլթանի մոտ և այլն: Ռեզիդենտները փաստորեն հանդիսանում են այդ գաղութների նահանգապետն ու բարձրագույն իշխանությունը, իսկ տեղերի կառավարիչները հանդիսանում են միայն նրանց գործիքը, նրանց կարգադրությունները կատարողը:

2. Այդպես են կոչվում մի յերկրի այն քաղաքացիները, վորոնք մշտապես ապրում են մի այլ պետության տերիտորիայում: Ամենից ավելի հաճախ մամուլում հիշատակություն է լինում Չինաստանում գտնվող ճապոնական ռեզիդենտների մասին, այսինքն այն ճապոնական հպատակների մասին, վորոնք բնակություն են հաստատել Չինաստանում: Չինաստանի այդ ճապոնական ռեզիդենտներից շատերը, քողարկվելով խանութպանի, լուսանկարչի, վարսավիրի, ափիոնածխարան և հասարակաց տուն պահողի, հյուրանոցատիրոջ կամ հյուրանոցի ծառայողի



և այլ զանազան «անմեղ» պրոֆեսիաներով, փաստորեն լրտեսությամբ են զբաղվում: Նրանք ուշի-ուշով ուսումնասիրում են իրենց շրջանը, տեղեկություն են հավաքում, մանրամասն ռազմա-տեղագրական քարտեզներ են կազմում, լուսանկարում են պաշտպանական կառուցումները, բնակչության մեջ գործակալական ցանց են հիմնում և այլն:

3. Ռեզիդենտ են կոչվում նաև ավելի բարձր աստիճանի պրոֆեսիոնալ հետախույզները—հետախուզական և հակահետախուզական օրգանների այն լիազորները, վորոնք «աշխատում են» ուրիշ յերկրում: Յերբեմն այդպիսի ռեզիդենտները պաշտոնապես կրում են զինվորական կցորդի, ժուռնալիստի, թղթակցի, ինժեներների դիմակ:

ՖԻԿՑԻԱ. (լատինական «ֆիկցիո» բառից)—Մտացածին բան, պատրանք: Ֆիկտիվ—նշանակում է հնարովի, կարծեցյալ, չինծու: Ֆիկտիվ (ֆիկցիա) են հանդիսանում բուրժուական-դեմոկրատական պետությունների սահմանադրություններով հռչակված «ազատությունները»: Այդ ֆիկտիվ ազատություններով, կարծեցյալ, ֆիկտիվ դեմոկրատիզմով կապիտալիստական յերկրների ղեկավարները սքողում են բուրժուազիայի դա

սակարգային տիրապետությունը, որը հիմնված է բոլոր աշխատավորների շահագործման վրա: Նույնիսկ այն յերկրներում, որտեղ բուրժուազիան ձևականորեն ճանաչում է ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքն ու գաղտնի քվեարկությունը, նա փաստորեն դրանք վոչնչի յե հավասարեցնում: Ընտրական իրավունքի ընդհանրությունն ու հավասարությունը նույնիսկ այդպիսի յերկրներում հանդիսանում են ֆիկցիա, ֆիկտիվ:

Ֆիկցիայի օրինակ է հանդիսանում նաև Իսպանիայի գործերին «չմիջամտելու» քաղաքականությունը: Ֆրանսիայի և Անգլիայի թողտվության հետևանքով գերմանո-իտալական ֆաշիստական ագրեսորներն ու ինտերվենտներն Իսպանիայում այդ չմիջամտելը վերածեցին ֆիկցիայի, դարձրին ֆիկտիվ:





Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Սրբագրիչ՝ Մ. ՍՈՒՐՅԱՆ
Հրատարակ. № 17. պատվ. № 128
Գլավլիտի լիազոր Շ—1255
Տիրաժ 6784

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ. «Խորհրդային Հայաստան»-ի տպարան, Յերևան

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.

բաժանորդագրությունը

# ,,ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժ. ի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . 3 »
3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին: